

Լուսանկարը՝ ՏԻԳՐԱՆ ՓԱՇԱՅԱՆԻ

# ԱՇԽԱՐՀԻ ԵՐԵԽԱՆԵՐԻՆ

ՀՈՎՍԵՓ ԵՐԻՑՅԱՆ

Գիտե՞ք դուք, փոքրի՛կ տերեր աշխարհի,
Թե ինչ է ուզում աշխարհը բարի.

Աշխարհն ուզում է դուք ժպտաք պայծառ,
Սիրով ծաղիկներ նվիրեք իրար,

Կապանքների տեղ փշալարերի՝
Խիտ շարքեր տնկեք կանաչ ծառերի,

Ձեր գլխի վերև արևը շողա,
Ամեն վտակում ձկնիկներ լողան,

Ծաղիկ ու մանուկ չհիվանդանան,
Եվ մեղուները շատ-շատ շատանան,

Որ լինեն բարի թե՛ ամպ, թե՛ անձրև,
Չլինեն չար-չար ամպեր սնկաձև,

Եվ ով էլ մի չար որոշում հանի,
Ձեզնից ամաչի, պատերազմ չանի:

# ՋՐԱՀԱ-ՄԵՔԵՆԱՆ ՄՏՆՈՒՄ Է ՊԱԼԱՏ

Մի անգամ, երբ պիոներները եկան Վ. Ի. Լենինի Կենտրոնական թանգարանի Լենինգրադի բաժանմունք, զարմանքով նկատեցին, որ շենքի առջև չկա կարմրամոխրագույն պատվանդանը: Չկար նաև զրահամեքենան, որի աշտարակը որպես տրիբունա էր ծառայել Հոկտեմբերյան հեղափոխության առաջնորդին: Այնտեղից Վ. Ի. Լենինը բոցաշունչ ճառ էր արտասանել 1917 թվականի ապրիլին:

Ի՞նչ էր պատահել զրահամեքենային... Բայց նախ՝ մեքենայի պատմությունը:

«Օստին» ֆիրմայի մեքենան Անգլիայից Ռուսաստան էր բերվել 1915 թվականին: Մեքենային զրահաշապիկ էին հագցրել Իժորսկի գործարանում: 1917 թվականի սկզբներից այն գտնվում էր Պետրոգրադյան պահեստային զրահադիվիզիայի արհեստանոցում:

Բոլշևիկների հետ ունեցած փոխպայմանավորվածության համաձայն զրահամեքենաների վերանորոգման արհեստանոցի ավագ վարպետ Ի. Մ. Լեշչենկոն ապրիլի 3-ին (16) արհեստանոցից դուրս բերեց մեքենան, որպեսզի Ֆինլանդական կայարանում մասնակցի շուրջ 10 տարի արտասահմանում ապրելուց հետո հայրենիք վերադարձող Վ. Ի. Լենինի հետ հանդիպմանը:

Ճանապարհին մարտական մեքենային միացավ երկրորդ զրահամեքենան, և մեքենաները, լապտերների լույսով խավարը թրատելով՝ հազարաձայն «կեցցեների» ուղեկցությամբ, առաջանում էին ժամապահների նման կողք-կողքի կանգնած մարդկանց շարքերի միջով, որտեղով պիտի անցներ առաջնորդը:

Եվ ահա Վլադիմիր Իլյիչը Ֆինլանդական կայարանի հրապարակում է: Բարձրանում է զրահամեքենայի վրա: Զրահամեքենայի գնդացրի աշտարակին կանգնած, առաջնորդը փայլուն ճառ է արտասանում, որն ավարտվում է «Կեցցե՛ սոցիալիստական հեղափոխությունը» բառերով:

Հոկտեմբերյան զինված ապստամբության օրերին մետաղե հսկան պաշտպանում էր հեղափոխության շտաբը՝ Սմոլնին, մասնակցել էր Ձմեռային պալատի գրոհին: Այն օրերին էլ մեքենայի մետաղե աշտարակի վրա հայտնվեցին յուղաներկով գրված բառերը. «Կապիտալի թշնամին»:

Այդ մեքենան մասնակցեց Կերենսկու զրահաջոկատի ոչնչացմանը, իսկ 1919 թվականին Պուլկովոյի մոտ Յուդենիչի զորքերի դեմ մղված մարտերին: Հետո զրահամեքենան ջոկատից ջոկատ անցավ ու... հետքը կորավ:



1939 թվականին ճիշտ այդպիսի զրահամեքենա գտնվեց Լենինգրադի մոտերքի մի բակում: Հատուկ հանձնաժողովը հաստատեց, որ դա նույն զրահամեքենան է: Այն վերականգնվեց և 1940 թվականի հունվարի 22-ին Վ. Ի. Լենինի Կենտրոնական թանգարանի Լենինգրադի մասնաճյուղի մոտ բացվեց նոր հուշարձանը:

...Ժամանակն ու լենինգրադյան եղանակը չէին խնայել մետաղը: Պարզ դարձավ, որ պետք է երկրորդ անգամ վերականգնել այն:

Ինժեներ Սոկոլովին ու փականագործ Վլասովին Մոսկվայից օգնության հասավ Լեշչենկոն՝ նախկին վարպետը, որը պատրաստել և փորձարկել էր զրահամեքենան պատմական երթարշավից առաջ: 1939 թվականին նա չէր մասնակցել գտնված մեքենայի ուսումնասիրությանը, իսկ հիմա արտակարգ հետաքրքրությամբ ստուգում էր բոլոր մետաղամասերը, խորհուրդ էր տալիս, թե ինչպես քանդել, առանձնացնել տարբեր հանգույցները: Իվան Միխայլովիչն արդեն 79 տարեկան, կրքոտ

ԱՇՈՒՆ

Աշունն անտառում հրդեհ է վառել,
Ու տերևներն են բոցկլտում դեզ-դեզ,
Գորշ ամպերն ահա ցնցուղներն առել,
Ուզում են մարել կրակները թեժ:

Թափում են, թափում ջրերն անձրևի,
Ու լողանում են թուփ, մացառ ու ծառ,
Սակայն գույնզգույն հրդեհն անտառի
Բոցավառվում է ավելի պայծառ:

Գալիս է քամին թափառաշրջիկ,
Որպեսզի օգնի այրվող անտառին,
Եվ խառնում է նա կրակներն իրար
Ու բորբոքում է հրդեհը կրկին:

Ծերուկ ձմեռը տեսնում է վերից
Ու փնթփնթալով ցած է՝իջնում շուտ,
Նետում է թիկնոցն հրդեհի վրա,
Ահա քեզ հրշեջ, և ինչքա՜ն հմուտ...

ՊԱՏՎԱԿԱՆ ԽԱՉԱՏՐՅԱՆ

ավտոսիրող, մեքենայով շրջել է ամբողջ երկիրը և հաստատում է, որ հիշում է բոլոր այն մեքենաների մասերը, որոնց հետ գործ է ունեցել...

Այնուամենայնիվ զրահամեքենայի վիճակը ծանըր էր: Ամենալուրջ, ամենակատարյալ «բուժումը» այլևս չէր կարող օգնել: Տասնամյակներ շարունակ մնալով դրսում, զրահի մեծ մասը կերել էր ժանգը: Հատուկ քսուքների, նուրբ եռակցման միջոցով, ճիշտ սկզբնական տեսքով վերականգնըվեց այն: Աշտարակի վրա գրված խոսքերը առաջինը լինել չէին կարող, որովհետև մեքենան բազմաթիվ անգամ ներկվել էր: Դիմեցին քրեական փորձագետ քիմիկոսներին: Սակայն երկար տարիների ընթացքում քարացած ներկը ոչ մի բանով մաքրել հնարավոր չէր: Ստիպված յուրահատուկ լուծույթով մի քանի տեղից սնեցին ներկը և քերեցին: Այս եղանակով տասը շերտ հեռացվեց: Եվ ահա վերջում երևաց մուգ կանաչավուն մակագրությունը. *«Враг капитала»* («Կապիտալի թշնամին»):

Այնուամենայնիվ զրահամեքենան դրսում թողնել այլևս չէր կարելի, իսկ դռնից էլ ներս չէր անցնում: Ստիպված մասերի բաժանեցին ու այնպես ներս տարան: Հավաքման ժամանակ շենքի ներսում օգտագործվեց նաև հատուկ վերամբարձ կռունկ:

Մեծ հոկտեմբերի 55-րդ տարեդարձի օրը մեքենան կանգնած էր նոր կայանում՝ Մարմարե պալատի առանձին դահլիճում:

Այժմ, առաջվա նման, էքսկուրսավարները թանգարանի ցուցանմուշների ծանոթացումը սկսում են լենինյան զրահամեքենայից...



# ԱՐՏԱԿԸ ԵՐԱԺՇՏԱԿԱՆ ԳՈՐԾԻՔՆԵՐ Է ԸՆՏՐՈՒՄ



*Լուսանկարները՝ ՊՈՂՈՍ ՊՈՂՈՍՅԱՆԻ*

*ՀՐԱՉՅԱ ՄԱԹԵՎՈՍՅԱՆ*

Մանկան տարվա առթիվ այս պատմվածքը նվիրում եմ իմ տղային և բոլոր այն մանուկներին, որոնք սիրում են նվագել:

Արտակն իմ տղան է: Մի օր նկարիչ է ուզում դառնալ, մի օր՝ ֆուտբոլիստ, մի օր՝ վարորդ, մի օր՝ շինարար, մի օր՝ օդաչու:

Այսպես, օրը մի երազ տեսնելով ու մի բան դառնալու ցանկությամբ մեծանում է տղան: Մի օր էլ զարթնեց, թե.

— Հայրի՛կ, ես երաժշտական ի՞նչ գործիքի եմ նման:

Ասում եմ, որ մարդը երաժշտական գործիք է սարքում, բայց ինքը նման է մարդու, ամեն երեխա նման է իր մայրիկին, հայրիկին, պապիկին կամ տատիկին, իրենց տոհմից որևէ մեկին:

— Չէ՛, ես ուզում եմ գործիքի նման լինել, ամենալավ գործիքի, որ ամենից լավ ես նվագում...

Սկսեց մտերմանալ մեր տան միակ երաժշտական գործիքին՝ դաշնամուրին: Մինչ այդ չէր ուզում մոտենալ, որովհետև... ծանր է: Ու երբ երաժշտական կրթություն ունեցող բարեկամուհիս՝ Հասմիկը, մեր տուն էր գալիս, նրան խընդրում էր, ստիպում, որ իրեն դաշնամուր նվագել սովորեցնի: Բայց մի քանի ամիս հետո, թե.

— Ախր, շատ ծանր է, որ ընկերներս կանչեն նվագելու, ինչպե՞ս կտանեմ:

Ասում ենք, որ հիմա ամեն տեղ դաշնամուր կա, որ դու պետք է համերգասրահներում ելույթ ունենաս, հեռուստատեսությամբ... Քիչ էր մնում համոզեինք, մեկ էլ, թե.

— Մատներս էն հեռու տեղերը չեն հասնում: Մեղք չե՞ն մեջտեղի ստեղները, անընդհատ նրանց եմ խփում...

Մի օր էլ, երբ դիտում էինք ժողովրդական գործիքների անսամբլի հերթական ելույթը, մատը մեկնեց դեպի ճերմակ մազերով պապիկը և ասաց.

— Ա՜յ, ես էս պապիկի ձեռքի գործիքից եմ ուզում նվագել: Կտանե՞ս մոտը:

Տարա հրաշալի ուդահար Կարապետ Արիստակեսյանի մոտ: Արտակին լավ ընդունեց, նվագեց նրա համար, իսկ աղջիկը՝ Մարին, նաև երգեց: Շատ ուրախացավ: Ասաց, որ իր համար ուդ առնեմ: Ճանապարհին հարցրեց.

— Ուդը շատ լավ է նվագում, չէ՞, հայրի՜կ:

— Ուդը չի նվագում, պապիկն է լավ նվագում,— պատասխանեցի:

Մի քանի օր հետո ասաց.

— Ուդ չառնես ինձ համար, ես ուդ չեմ նվագի: Բա որ Կարապետ պապիկի նման ես էլ չաղանամ:

Մի օր էլ կպավ, թե միայն քամանչա է ուզում նվագել: Շատ որ համառեց, տարա Խաչիկ Շիրալյանի մոտ:

— Խաչի՜կ ջան,— ասացի,— տղաս ուզում է հացդ կտրի: Մի անգամ ասացի՝ Սայաթ-Նովայի երգերը ամենից լավ կատարվում են քամանչայի նվագակցությամբ, գլուխն է մտցրել, թե...

— Սիրով, ես շատ ու շատ երեխաների հետ եմ պարապել, սովորեցրել, Արտակին էլ կսովորեցնեմ...

Խաչիկն իր գործիքի նման այնիվ սիրտ ունի, հանեց իր ոսկե քամանչան, մեկնեց տղայիս ու ասաց.

— Կմեծանաս, այսպես կնստես ու կնվագես: Հետո մի օր կմրցենք, դու ինձ կհաղթես ու էս ոսկեկոթ քամանչան ես կնվիրեմ քեզ, եղա՞վ,— Խաչիկը համբուրեց Արտակին...

Արտակն սկսեց ծանոթանալ գործիքին, ուրախացավ...

Մի քանի օր հետո, թե՝ քամանչա չի սիրում, փոքր հաստ է, մեջքը բարակ, մի կողմը ծանր է, մյուս կողմը՝ թեթև, հետո՝ բա որ նվագելու ժամանակ հանկարծ լարը կտրվի՞...

Մի օր էլ եկավ, աչքերում ժպիտ ու խնդրանք.

— Ջիվան Գասպարյանի՝ մոտ տար, ես նրա դուդուկից եմ ուզում նվագել: Նրա դուդուկը ամենից լավ է նվագում:

Հազար ասա, որ մարդն է լավ նվագում, ոչ թե գործիքը, չի ուզում հասկանալ: Ասացի, որ Ջիվան Գասպարյանին բոլորովին չեմ ճանաչում: Նեղացավ.





— Ի՞նչ անենք չես ճանաչում: Կծանոթանաք: Բոլորն էլ սկզբում իրար անծանոթ են լինում: Ես որ մանկապարտեզ գնացի, ո՞ւմ էի ճանաչում: Որ եկանք այս շենքը, ո՞ւմ էի ճանաչում:

Ջիվան Գասպարյանը իր նվագով պարզապես կախարդեց Արտակին:

Մի քանի օր Արտակը ինձնից քաշված էր մնում: Բայց երևում էր, որ «ոտին տեղ» է անում, որ մոտենա: Այդպես էլ եղավ.

— Ախր, հայրի՛կ, Ջիվան քեռու դուդուկը շատ թեթև է: Մեկ էլ ձեռքիցս կընկնի, կկոտրվի: Էն ժամանակ ես ի՞նչ կանեմ:

Էլ երաժշտական գործիք չմնաց, ամենքին մի պոչ կպցրեց: Մի օր էլ թե.

— Հայրի՛կ, ես միայն ջութակ կնվագեմ:

—Տղամարդու խո՞սք:

— Տղամարդու խոսք,— ասաց Արտակն ու ձեռքը մեկնեց:— Թխի գա:

Թեև գիտեի, որ Արտակի խոսքի մեջ աղ չկա, բայց, ինչ արած, հանկարծ մի նոր Ռուբեն Ահարոնյան ծնվի: Լավն այն է, որ ում սիրում է, ում ցանկանում է տեսնել, Երևանում են ապրում:

Խնդրեց, թե՝ տար Ռուբեն Ահարոնյանի ջութակի մոտ:

— Ջութակի՞, թե՞ Ռուբենի:

— Ջութակի:

Ռուբեն Ահարոնյանը ուշադիր նայեց Արտակի մատները. ձյունի պես ճերմակ մատներ են, ջութակ նվագելիս պարզապես կհալվեն: Երկար նայեց աչքերին. խոր աչքեր են, երաժշտական պատկերները աչքերով են ըմբռնում: Փորձեց լսողությունը: Չիմանաք, թե իմ տղան է, գովում եմ, շատ գոհ մնաց: Ասաց, որ հիմա երաժշտական երեխաներ շատ են ծնվում, հարկավոր է դեռ փոքր հասակից գտնել նրանց ու դաստիարակել, արթնացնել նրանց երաժշտական ընդունակությունները:

— Լսողությունը մնում է լսողություն: Բայց ինձ թվում է Արտակը ունի ջութակային ընդունակություն: Ինքն էլ ջութակի նրբություն ունի: Գուցե եթե ամեն ինչ բարեհաջող ընթանա, կոնսերվատորիայում ես լինեմ Արտակի դասատուն:

Որոշեցինք Արտակի համար փոքրիկ



ջութակ առնել ու անպայման ժամանակին տանել երաժշտական դպրոց:

Ջութակահար տղայիս բախտը վճռված է: Ուրեմն չենք տեսնի նրա կառուցած շենքերը, դժվար ճամփաներով սլացող նրա մեքենան, կապույտ երկնքում չենք տեսնի նրա ինքնաթիռը... Բայց բոլորին, բոլորին, թե՛ կառուցողներին, թե՛ վարորդներին, թե՛ օդաչուներին, բոլորին, բոլորին հարկավոր է երաժշտություն, ջութակի նուրբ նվագ:

Հիմա ես նրա համար մի փոքրիկ ջութակ կառնեմ, թող աչքի դեմ լինի, թող իմանա, որ դա միայն իր ջութակն է ու միայն ինքն է նվագելու: Համոզված, որ ջութակ եմ առնելու, խնդրեց.

— Ջութակ շատ եմ սիրում, տասը հատ կառնես, հա՞...

— Տասը ջութա՛կն ի՞նչ ես անում, ջութակահարների տասնյա՞կ ես բացելու,— չգիտեի զարմանայի՞, թե՞ կայֆանայի:

— Տասը ջութակ կառնես, հերթով սիրուն կչարեմ,— թախանձում էր նա:

— Եղա՛վ, Արտա՛կ ջան, ջութակը հո գունավոր մատիտ չի՞:

— Լավ, հայրի՛կ ջան, քանի հատ ուզում ես առ, միայն որ լարերի վրայով տանում են բերում, անունն ի՞նչ է...

— Աղեղ:

— Հա, աղեղ, էլ չեմ մոռանա, աղեղ չառնես...

— Ո՞նց թե... Աղեղն է ջութակին խոսեցնում: Հասկանո՞ւմ ես: Ջութակն առանց աղեղի եղած թե չեղած մի հաշիվ է: Աղեղով են սրտի թելադրանքը հաղորդում...

— Աղեղ չեմ ուզում: Վախենում եմ նվագելու ժամանակ աչքս մտնի:

— Ա՛յ տղա,— ջղայնանում եմ,— քո գլխում քամի կա:

— Տեսա, ես տեսա, աղեղը որ աչքը չմտնի, Ռուբեն Ահարոնյանը ակնոց էր դրել: Ես չեմ ուզում ակնոց...



— Չէ՛, Արտա՛կ, ինձ արդեն հոգնեցրիր...

— Ոչինչ, հայրի՛կ: Ես դեռ կմտածեմ, թե ինչ գործիք եմ սիրում: Ջութակ մի՛ առնի... որ կորոշեմ, քեզ կասեմ, թե ինչ առնես...

Եվ մինչև օրս Արտակը շարունակում է երաժշտական գործիք ընտրել...



# ԶՐՈՒՅՑՆԵՐ ԼԵԶՎԻ ՄԱՍԻՆ

*ԼԵՎՈՆ ՀԱԽՎԵՐԴՅԱՆ*
*Բանասիրության դոկտոր*

## 19. Ի՞ՆՉ ԵՆ ԴԻՊՎԱԾԱԲԱՆՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ ԵՎ Ի՞ՆՉՊԵ՞Ս ԵՆ ԳՈՅԱՆՈՒՄ

Մեր նախորդ զրույցն ավարտեցինք դիպվածաբանությունների մասին պատմելու խոստումով: Ասացինք նաև, որ ամենից լավ երեխաներն են նորահայտ բառեր հորինում:

Այդ երևույթին Կորնեյ Չուկովսկին մի մեծ ու հիանալի գիրք է նվիրել «Երկուսից մինչև հինգը» վերնագրով: Այստեղ գրողը պարզաբանել է բառաստեղծման այն բուռն ընթացքը, որ համակում է 2-ից մինչև 5 տարեկան երեխաներին: «Այսպիսի չգիտակցված բառաստեղծումը մանկության ամենազարմանալի երևույթներից մեկը» համարելով, Չուկովսկին իր միտքը հաստատել է հարյուրավոր օրինակներով: Մեջբերենք դրանցից մի քանիսը: Երեխան ավելի բնական է համարում, որ ձեռնոցին ասեն ոչ թե *перчатки*, այլ *пальчатки*, չէ՞ որ մատների (*пальцы*) վրա է հագցվում ձեռնոցը: Սա երեխայի համար ավելի հասկանալի է (զուր չէ, որ ձեռնոց բառը հայերենում ստեղծվել է այդ տրամաբանությամբ): Կամ՝ նա կարող է շատ հանգիստ իրար միացնել *безумно* և *изумительно* բառերը և ասել, թե ինքը *безумительно* սիրում է փիսիկներին, կամ էլ՝ միլիցիոներին կոչել *улицио-нер*, քանի որ նա մշտապես փողոցումն է լինում:

Այսպիսի հորինումներ, իհարկե, մեր երեխաներն էլ անում են, ափսոս միայն, որ մեզանում դա չի դարձել հատուկ ուշադրության առարկա: (Ասենք ի միջի այլոց, որ Չուկովսկին իր բազմաթիվ օրինակները հավաքել է ոչ միայն անձնական գննումների, այլև իր մեծաքանակ թղթակիցների շնորհիվ, որոնք իրենց լսածը հաղորդել են նրան):

Հիշում եմ, օրինակ, շատ տարիներ առաջ, երբ գնացքը մի քանի անգամ թունելներ մտավ ու դուրս եկավ, իմ չորս տարեկան տղան զարմանքից աչքերը չռեց: Բացատրեցինք, որ գնացքն անցնում է թունելով: Երբ մի անգամ էլ թունել մտանք, նա գոչեց՝ մութե՞լ, մութե՞լ... Իրոք, ինչո՞ւ «թունել», երբ մութել պիտի ասել, չէ՞ որ վագոնը մթնում է:

Մի օր էլ, մեր երեխաներից մեկը, որ խտացրած կաթ շատ էր սիրում, այս երկու բառը միացրեց ու գոչեց՝ խըտելած: Եվ այդ հնարքով, անիմաստ բառը մտավ մեր ընտանեկան բառապաշարը: Իհարկե, բանից անտեղյակ մարդիկ զարմանում էին, չիմանալով ինչի մասին է խոսքը:

Այսօրինակ դիպվածաբանություններ երեխաներն առատորեն հորինում են մինչև 7—8 տարեկան հասակը, երբ այլևս յուրացնում են մայրենի լեզվի բառապաշարը և սկսում են գիտակցաբար հետևել լեզվի կանոններին:

Չպիտի կարծել, թե դրանից հետո այդ ընթացքն իսպառ կանգ է առնում, և դա միայն փոքրիկ լեզվագետների մենաշնորհն է: Պատանի հասակում էլ, չափահաս դառնալուց հետո էլ

մարդիկ որևէ դիպվածով հորինում են բառեր ու դարձվածքներ, որոնք չես գտնի ոչ մի բառարանում: Դրանք լեզվագիտության մեջ կոչվում են դիպվածաբանություններ, այնպես, ինչպես օտար լեզուներից առնված բառերն ու դարձվածքները կոչվում են օտարաբանություններ: Դիպվածաբանությունը չպետք է շփոթել գիտակցված, նպատակադիր բառաստեղծման հետ: Ասենք, արձակագիր Ք. Թափալցյանը, ստեղծել է ուղեգորգ կոկիկ բառը, արձակագիր Ա. Ստեփանյանը՝ բոկոտիկ-ը, իբրև *босоножка*-ի համարժեքը: Բառաստեղծման այսպիսի գեղեցիկ օրինակներ շատ կարելի է բերել: Մինչդեռ դիպվածաբանությունները ստեղծվում են տեղնուտեղը, ակամա, որևէ պատեհ առիթով: Ասենք, մի քանի բաժակ սուրճ խմելուց հետո նրանցից մեկը կարող է ասել՝ սուրճախեղդ եղանք: Կամ՝ մի անգամ, երբ մեր ավտոմեքենան Դիլիջան էր մտնում, մեր ուղեկիցներից մեկը դարձավ մյուսին, որի մայրը դիլիջանցի էր՝ հասանք քո մայրենիքը: Բոլորը ծիծաղեցին հայրենիք բառի նմանությամբ ստեղծված բառի վրա: Իհարկե, դա ևս չի կարող մտնել համաժողովրդական լեզվի մեջ: Ասվում է ինքնահնար բառը և մոռացվում:

Բայց բոլոր դիպվածաբանությունները չէ, որ մոռացվում են: Որոշ բառեր, իրոք, ծնվում են ու մեռնում տեղնուտեղը, որոշ բառեր էլ բույն են գտնում նեղ միջավայրում (ընտանիքում, դասարանում, ընկերական տվյալ շրջանում, նույնիսկ՝ երկու ընկերոջ միջև), որոշ բառեր ու դարձվածքներ տարածում են գտնում ավելի ու ավելի, թափանցում համաժողովրդական խոսակցական լեզվի, մինչև իսկ գրականության լեզվի մեջ, որոշ բառեր ու դարձվածքներ էլ մնում են ժարգոնների սեփականությունը:

Իսկ ի՞նչ են ժարգոնները:



ՀԱՐՈՒԹՅՈՒՆ ՀՈՎՆԱԹԱՆ

## Եթե քամի չլինի

Եթե քամի չլինի,
Այգում շարժում կլինի՞:
— Եթե տաք է ու գարուն,
Կկարկաչի ժիր առուն,
Իսկ այնտեղ, ուր կա առու,
Մանուկներ են խաղալու:
Թե այգի է՝ կա թռչուն,
Որ ճյուղից ճյուղ է թռչում:
Բարակ ճյուղից թռչելիս,
Նրան շարժում է տալիս:

## Ընկերը

Դպրոցից տուն դառնալիս,
Սեթը հարցեր է տալիս.
— Ճամփին արջ է հանդիպում...
Ի՞նչ կանես դու այդ դեպքում:
— Ես կգտնեմ ինչ-որ բան...
— Ամայի է այդ ճամփան:
— Կկանչեմ ես՝ օգնությո՜ւն...
— Ծուրջդ ո՛չ մարդ, ո՛չ էլ տուն:
— Իսկույն ծառը կելնեմ ես:
— Ծառ էլ չկա, ասեմ քեզ:
— Ծունչս պահած կմնամ:
— Դա էլ հայտնի է նրան:
— Պարզ է, նույնիսկ քար չկա,
Փրկվելու ճար չկա:
—Բայց սպասիր, ինձ պարզ չի,
Ի՞մ ընկերն ես, թե՞ արջի:

ԱՆՆԱ ՍԱԿՍ

# ԹՐԱԿՈՒՀԻՆ



Նկ. [illegible] ՀԱԿՈԲՅԱՆԻ

Հռոմեացի Բարբագալո զորավարը հրամայեց մահապատժի ենթարկել բոլոր գերի թրակիացիներին, կենդանի թողնելով միայն ամենագեղեցիկ և ամենաուժեղ երկու պատանիների՝ Թերեսին և Սևտեսին: Նա այդ պատանիներին բերեց Հռոմ և տվեց գլադիատորների դպրոց:

Հայրենիքի կարոտը, գերության դառնությունը՝ ստրուկի նվաստացուցիչ վիճակը ճնշում էին երիտասարդ թրակիացիներին, և նրանք աղերսում էին իրենց աստվածներից միայն մի բան. շուտափույթ մահ: Բայց աստվածները չէին լսում նրանց աղոթքները: Օրերն անցնում էին իրար ետևից, իսկ պատանիներն ամեն առավոտ արթնանում էին ողջ և առողջ, վերցնում իրենց սրերը և վարժվում պաշտպանվելու ու հարձակվելու արվեստին:

— Գուցե աստվածները մեզ համար սահմանել են մեկ ա՞յլ ճակատագիր,— մի անգամ ցածրաձայն ասաց Թերեսը Սևտեսին:— Գուցե նրանք ուզում են մեզ սովորեցնել սրին հմտորեն տիրապետելուն, որպեսզի մենք վրեժխնդիր լինենք մեր ժողովրդին հասած անարգանքի համար:

— Եթե աստվածներն անզոր գտնվեցին փրկելու մեր ժողովրդին, ապա մենք ինչպե՞ս կարող ենք այդ անել,— ծանր հառաչելով պատասխանեց Սևտեսը:

— Խնդրենք երազների աստվածուհուն, թող նա գուշակի, թե ինչ է մեզ սպասվում,— ասաց Թերեսը, և Սևտեսը համաձայնություն տվեց:

Երբ Թերեսն առավոտյան բարեկամին պատմեց, թե ինչ երազ է տեսել, Սևտեսն արդեն կարիք չուներ իրենը պատմելու, երկուսն էլ նույն երազն էին տեսել:

Թերեսը տեսել էր, որ ինքը սրով դուրս է գալիս

Աննա Սակսը լատիշ անվանի գրողներից է։ Նա ծնվել է 1905 թվականին, աղքատ գյուղացու ընտանիքում։ Նրանց «Կուչա» անսովոր անունով տնակը գտնվում էր անտառում, և անտառը դեռ մանկուց դարձել էր գրողի մշտական բարեկամը։

«Անտառում եմ անցկացրել իմ կյանքի ամենասքանչելի պահերը, դժվար րոպեներին այնտեղ եմ մխիթարություն գտել»,— գրել է Աննա Սակսը։ Հենց այդ սերն էլ բնության նկատմամբ դարձել է այն ներշնչանքի աղբյուրը, որից ծնվել են գրողի բազմաթիվ հեքիաթները։

ասպարեզ, իսկ իր դեմ, նույնպես սուրը ձեռքին, Սևտեսն է կանգնած։ Նրանք շփոթված նայում են իրար, իսկ ամբոխն աղաղակում է, պահանջելով, որ գլադիատորները սկսեն մենամարտը։ Նրանցից ոչ մեկը չի համարձակվում ձեռք բարձրացնել դժբախտության ընկերոջ վրա, բայց ահա վազելով Թերեսին է մոտենում հռոմեացի գեղեցիկ մի աղջիկ և ասում. «Թրատիր այնպես, որ դու հաղթես և կստանաս ազատություն ու իմ սերը»։ Թերեսը թափահարում է սուրը, բայց այդ պահին ստորերկրյա մի ձայն բացականչում է.— «Վարվիր այնպես, ինչպես սիրտդ է թելադրում»։

— Դե, դու ճի՞շտ իմ երազն ես տեսել,— զարմացած բացականչեց Սևտեսը։

Երեկոյան, երբ բարեկամները վերադառնում էին պարապմունքից, նրանք հանդիպեցին հռոմեացի երկու սքանչելի աղջիկների։ Նրանք Բարբագալոյի դուստրերն էին՝ Օկտավիան և Լեոկարդիան։ Թերեսն ու Օկտավիան հայացքներ փոխանակեցին, և երկուսին էլ ասես շանթեց կայծակը։ Նրանք անզոր էին աչքերն իրարից կտրելու և դրա համար էլ չտեսան, որ նույնը կատարվում էր Սևտեսի ու Լեոկարդիայի հետ։

Սերը միշտ չէ, որ կույր է, այն իմաստով էլ է լինում և սիրահարները միասին լինելու ելք գտնում են, թեև նրանց միջև այնպիսի անդունդ կար, ինչպիսին էր հաղթողի և ստրուկի վիճակը։

Երկար ժամանակ Բարբագալոյի մտքով իսկ չէր անցնում, որ իր դուստրերը գաղտնի հանդիպում են գլադիատորների հետ, մինչև որ Օկտավիան չխոստովանեց նրան իր խելահեղ սերը, իսկ մի որոշ ժամանակ անց նման խոստովանություն արեց Լեոկարդիան։

Բարբագալոն իր դուստրերին չբանտարկեց դղյակում, չարգելեց նրանց կարճատև հանդիպումները սիրեցյալների հետ։ Այլ միայն հայտնեց, որ առաջին մենամարտում միմյանց դեմ կելնեն գլադիատորներ Թերեսը և Սևտեսը, և նա, ով կհաղթի, ազատություն կստանա։ Նենգ Բարբագալոն հուսով էր, որ գլադիատորները կենաց ու մահու պայքար կմղեն և նրանցից ոչ ոք ողջ չի մնա, մենամարտն էլ հոյակապ տեսարան կլինի։

Ամեն ինչ ընթանում էր այնպես, ինչպես կանխատեսել էր Բարբագալոն։ Օկտավիան համոզում էր Թերեսին, ինչ գնով էլ ուզում է լինի հաղթել, որը նրան ազատություն կբերի, նույնը Լեոկարդիան էր կրկնում Սևտեսին։ Քույրերը թշնամացան, քանզի յուրաքանչյուրը հոգում էր իր երջանկության համար։



Եկավ մենամարտի օրը: Ամֆիթատրոնը լեփ-լեցուն էր. առաջին կարգում նստած էր Բարբագալոն՝ դուստրերի հետ:

Երբ թրակիացի զինվորի համազգեստով ասպարեզ դուրս եկան Թերեսն ու Սնտեսը և շողշողացող սրերը բարձրացնելով բացականչեցին՝ «Մահվան գնացողները ողջունում են քեզ», ամբոխը ոռնաց հիացմունքից: Օկտավիան հայացքով խրախուսեց Թերեսին, Լեոկարդիան նրշան արեց Սնտեսին և ցույց տալով Թերեսին՝ բթամատը ցած իջեցրեց:

Գլադիատորները պատրաստվեցին մարտի, բարձրացրին սրերը: Հանդիսատեսները լարվեցին, քույրերը քարացան:

Բայց այն պահին, երբ Թերեսն արդեն պատրաստվում էր խոցել Սնտեսին, լսեց իր սրտի ձայնը.

— Թրակիացի՛ Թերես, ի՞նչ կպատասխանես մայր-հայրենիքին նրա որդու սպանության համար:

Նույն հարցը Սևտեսին տվեց նրա սիրտը, և հակառակորդները նետվեցին իրար գիրկ ու համբուրվեցին:

Վրդովված ամբոխը ըսկըսեց աղաղակել.

— Նրանք պետք է մեռնե՛ն:

Օկտավիան վեր թռավ և բացականչեց.

— Թերե՛ս, պայքարի՛ր մեր երջանկության համար:

Նույն խոսքերով Լեոկարդիան էր ջանում քաջալերել Սևտեսին:

Թերեսը թափահարեց սուրը, հանգստացրեց հանդիսատեսներին և գլուխը հպարտորեն բարձրացնելով, ասաց.

— Դուք ավելի ուժեղ էիք և մեզ ձեր ստրուկները դարձրիք, բայց ձեզ չի հաջողվի մեզ սրիկաներ դարձնել: Դուք կարող եք մեզ սպանել, բայց երբեք չեք հաղթի:

Այդ ասելով, նա իր սուրը խրեց հողի մեջ: Նույնը արեց և Սևտեսը:

Բարբագայոն իր զինվորներին հրամայեց ըսպանել ապստամբ գլադիատորներին: Երբ Թերեսի և Սևտեսի դիակները տանում էին մրցադաշտից, հրաշք կատարվեց. հողի մեջ խրված սրերը կանաչեցին, դրանց վրա հայտնվեցին բողբոջներ ու ծաղիկներ ծաղկեցին:

Այդ ծաղիկները կոչեցին թրաշուշաններ:

**Գիտե՞ք որ...**

# Յուրային՝ օտարների մեջ

Ասում են՝ գայլերի հետ ապրողը գայլի նման պետք է ոռնա...

Շվեդ կենսաբան Էրիկ Ցիմենը այդպես էլ անում էր այն մի տարվա ընթացքում, որ անց կացրեց գայլերի ոհմակի հետ: Գազաններն ոչ միայն իրենց միջավայր ընդունեցին գիտնականին, այլև արժանիորեն «գնահատեցին» նրա «գայլային» ունակությունները՝ իմաստությունը, ճարպկությունը, ուժը (օգնության էր հասնում մորուքը): Նրանք Ցիմենին ընդունում էին ոչ միայն որպես յուրային, այլև որպես առաջնորդ և վերաբերվում էին մեծ պատկառանքով: Գայլերի հետ ընական և երկարատև փոխհարաբերությունը գիտնականին թույլ տվեց ընկալելու ոհմակի հոգեբանությունը, մանրամասն հետազոտել մինչև այժմ էլ մարդկանց վախ պատճառող (Ցիմենի կարծիքով՝ խիստ չափազանցված) այդ գիշատիչների ապրելակերպը: Իսկ ինչ վերաբերում է, օրինակ, «խմբով երգելու» գայլերի սովորությանը, գիտնականի դիտարկումներով, այն նախ ծառայում է որպես այլ ոհմակների և ետ մնացած ընկերների հետ հաղորդակցման միջոց և, բացի այդ, ունի զուտ զգայական հիմք, զարգացնում է գայլերի մեջ ընդհանրություն, ոհմակի մի մասը լինելու զգացումը:









ԱՐԹՈՒՐ ԱՌԱՔԵԼՅԱՆ. № 8 դպր., 5-րդ դաս.

# ԼՈՒՍԱՆԿԱՐԻՉՆԵՐԻ ԽՄԲԱԿԸ

Երևանի դպրոցականների գեղագիտական դաստիարակության տանը գործում են ջնարակային արվեստի, դաշնամուրի, երգչախմբային, պարուսուցման և լուսանկարչական խմբակներ:

Լուսանկարչական խմբակում ընդգրկված են քսան աշակերտներ: Նրանց աշխատանքները ցուցադրվել են Երևանի № 8 դպրոցում, որտեղ խմբակի համար լավ պայմաններ են ստեղծված, և Մոսկվայում՝ դպրոցական լուսանկարիչների համամիութենական ցուցահանդեսում:

## Թե ինչպես պատրաստվեցինք քննություններին

Այս պատմությունն այն մասին է, թե ինչպես ես և իմ սիրելի դասընկերուհին՝ Գոհարը, պատրաստվեցինք քննություններին: Այստեղ գլխավորապես ասված է ճշմարտությունը: Ճիշտ է, փչոց էլ կա, բայց ճշմարտությունն ավելի շատ է:

Եվ այսպես, կանգնել էի մեծ, շագանակագույն դռան առաջ և անհամբեր հրնչեցնում էի զանգը: Նախասենյակից ոտնաձայներ լսվեցին, ինչ-որ բան չըրխկաց և դուռը բացվեց:

— Պիտի պարապենք, չէ՞,— գործնականորեն ձեռքերը շփելով ասաց Գոհարը: Նրա աչքերից հասկացա, որ էլի ինչ-որ բան է մտածել: Գոհարի գլխում շարունակ զարմանալի փայլուն մտքեր են ծնվում: Հաճախ մտածում եմ, որ եթե նա իր ամբողջ կյանքում ոչինչ չանի և միայն պատմի դրանք, դարձյալ ժամանակը չի բավականացնի: Այսօր էլ ահա մի նոր, բոլորովին անկրկնելի գաղափար էր ծնվել: Նա ասաց, որ բոլոր մեծ մարդիկ գրել են որտեղ պատահի՝ կառքերի դռներին, փողոցի սալահատակի վրա, իսկ ակադեմիկոս Մերգելյանը թատրոնում աշխատելու տարիներին խնդիրներով էր լցնում ամբողջ բեմը: Վերջապես նա հասավ գլխավոր մտքին. «Պարապելու համար ամենահարմար բանը հատակն է»: Անհանգստանալու կարիք չկա, իրենց հատակը լաքապատ է, և եթե թաց լաթով մի լավ սրբվի, հետքերը չեն մնա:

Մենք արագորեն սենյակից դուրս տարանք այն ամենը, ինչ կարողացանք տեղաշարժել և ոգևորությամբ գործի

# ՊԵՊԵՆՆԵՐԸ

Բոււնցքներն աչքերին՝ աղջնակը դողդոջ
Լալիս է, լալիս է անդադար,
Կարծում եք «երկո՞ւս» է ստացել, ո՜չ-ո՜չ,
Նեղացրել է նրան տղան չար:

«Պեպենոտ» է կանչում, բարկացնում աղջկան,
Օձիքից ճպուռ է ներս խցկում...
Ասացեք խնդրեմ, մեղավո՞ր է նա,
Որ քթին պեպեններ են ծաղկում:

Արեգակն աղջկա բարեկամն է լավ,
Հասկացիր այդ բանը, ա՛յ Պետրով,
Նա ամենամոտ մարդկանց է միայն
Զարդարում իր նախշուն պեպենով:

*ՕԼՅԱ ԱՆԻՍԻՄՈՎԱ*
*Մեծ Ուստյուգ*



*ՌՈՒԲԵՆ ԽՈՐԳՈՄՅԱՆ, № 8 դպր., 9-րդ դաս.*

անցանք: Իսկապես, որ հատակը գրատախտակից էլ հարմար էր, միայն ծընկներս էին մի քիչ ցավում, բայց հանուն գիտության կարելի էր դրան էլ դիմանալ: Եվ մենք դիմացանք...

Դռների մեջ հայտնվեց Գոհարի փոքր եղբայրը՝ Կարենը: Նրա հագին միայն մի կարճլիկ շապիկ էր: Նա կանգնել էր և մտածկոտ հայացքով նայում էր հատակին:

— Արի՛ սրան քնեցնենք, հետո շարունակենք,— ասաց Գոհարը:

Մենք Կարենի համար երգեցինք մեր իմացած բոլոր երգերը, արտասանեցինք բոլոր բանաստեղծությունները, նույնիսկ նախադասություններ վերլուծեցինք, բայց նա համառորեն մեզ էր նայում լայն բացված շագանակագույն աչքերով:

Վերջապես հասկացանք, որ ավելի լավ է նա չքնի, քան մենք քննությունից «երկու» ստանանք: Հագցրեցինք նրան և նորից սկսեցինք վարժություններ և խնդիրներ լուծել: Այնպես էինք տարվել, որ չնկատեցինք, թե ինչպես սենյակը լցվեց ծխով: Գազօջախին դրված կաթսան հանգարտորեն ծուխ էր արձակում: Մենք շփոթված իրար անցանք: Չգիտես ինչու, նույնիսկ ջրի ծորակը բացեցինք: Կարենը նայեց, նայեց մեզ իր մտախոհ հայացքով, հետո ասաց. «Պատուհանը բացեք»: Արագորեն բացեցինք բոլոր պատուհաններն ու դռները և շարունակեցինք պարապել: Մեկ էլ հանկարծ՝ շը՜խկ... Նախասենյակի ապակե դուռը որոշել էր, որ հասել է մեզ խանգարելու իր հերթը և փշուր-փշուր էր եղել: Մենք տագնապահար դուրս թռանք նախասենյակ:

— Գիտե՞ս, եթե այսօր այսքան ձախորդություններ պատահեցին, ուրեմն վաղը հաստատ «երկուս» ենք ստանալու,— ասաց Գոհարը հառաչելով:



ՕՀԱՆՆԵՍ ԿԱՆՏՈՒՆԻ, N 8 դպր., 5-րդ դաս.

## ՀԻՐՈՍԻՄԱ

Այսպես է եղել
Դեպքն աղետի.
Երկինք ուղարկվեց
Մի ինքնաթիռ,
Նրա թռիչքն էր
Սարսափելի,
Թռչում էր միայն,
Որ մահ բերի:
Ու՞ր սև քեն ուներ
Իր ներսում նա.
Նետեց քաղաքի
Վրա սև մահ...
Եվ հազարավոր
Կյանքեր... չկա՜ն,
Այս ի՞նչ փորձանք էր
Վերից ընկավ...
Պետք է պահպանենք
Հողն հայրենի,
Որ խաղաղությունը
Հավերժ լինի:

ԲՈՐՅԱ ՍԱՊԵԼՆՅԱԿ
Կալմիկական ԱՍՍՀ
Յաշկուլ ավան
Թարգմ. Մ. ՈՍԿԱՆՅԱՆԻ

•

— Դա հաստատ է. դրա մասին չխոսենք,— ես նույնպես հառաչեցի:

— Ի՞նչ ենք ասելու մերոնց...

Ես ուզում էի պատասխանել, բայց Գոհարի հանկարծակի լարված դեմքից կզացի, որ դարձյալ բան է պատահել:

— Դու չգիտե՞ս, թե որտեղ է Կարենը,— դանդաղորեն շուրջը նայելով ասաց նա,— ինչ-որ ձայնը չի գալիս...

Եթե Կարենը հինգ րոպե չի երևում, ուրեմն դա սարսափելի նշան է: Այս անգամ նրան գտանք ննջարանում: Կոշկաներկի սև բծերով ծածկվել էր պատը, իսկ նա ինքնագոհ, սևացած ձեռքերն էր սրբում վերնաշապիկի վրա: Մեզ տեսնելով, նա անխռով հայտարարեց.

— Էշ քշել եմ, էշ էլ լուծել եմ...

Հետո նորից նայեց պատին, մեկ անգամ ևս ինչ-որ «ուղղումներ» արեց և հանգիստ ասաց.

— Իշկ հոխանոչում դետատ տա:

— Գետա՞կ, խոհանոցո՞ւմ...

Ծորակից ջուրը հոսել էր, հոսել և թափվել հատակին: Ճիշտ որ գետակ: Կարենն ուրախ-ուրախ ոտքերով չըփչըփացնում էր մեջն ու ծիծաղում: Հատակն էինք չորացնում, երբ դուռը բացվեց և դռների մեջ կանգնեց Գոհարի մայրիկը: Նրա հայացքը սահեց ապակու կտորտանքների, գրոտված հատակի, Կարենի թաց ու սև կերպարանքի վրայով և բևեռվեց մեզ:

— Պարապում էինք,— շփոթված քրթմնջացինք մենք,— իսկ մեր ձեռքի թաց լաթից ջուրն ուղղակի հոսում էր բազմոցի վրա:

...Հաջորդ օրը քննություն էր:

ՆԱՐԻՆԵ ԳԵՎՈՐԳՅԱՆ
Երևանի N 82 դպր., 10-րդ դաս.

# ԴՊՐՈՑԻ ՃԱՄՓԻՆ

Ես դեռ փոքր էի, շատ փոքր, սովորում էի առաջին դասարանում: Երկու բարձր պոչիկներ էի կապում ու փոքրիկ պայուսակս խաղացնելով, վազում դպրոց: Իսկ եթե հանկարծ ուշանում էի, կանգնում էի դասարանի մի անկյունում ու աչքի պոչով, մի քիչ էլ չարաճճի, նայում դասարանին: Ես շատ չարաճճի էի, դրա համար մեր դասղեկ ընկ. Գրիգորյանը ստիպված շաբաթը մի երկու անգամ ինձ անկյուն էր կանգնեցնում:

Մի առավոտ էլ արթնացա, երբ նույնիսկ մեր աքլորը ծուղրուղու չէր կանչել: Այսքան շո՜ւտ: Ոչ մի կբաղմունք չգտնելով՝ սկսեցի քարով հարվածել հարևանի շանը: Դադարեցի միայն այն ժամանակ, երբ հարևանի ծեր մայրը կայրացած, ըսպառնաց, թե կգանգատվի հայրիկիս: Պայուսակս ծանրորեն քարշ տալով, հասա մի փոքրիկ աղջկա, բռնեցի նրա ժապավեններից, քաշեցի: Աղջիկն սկսեց լալ:

Այդ ժամանակ Օհան պապի ձեռքն իջավ ուսիս.

— Փոքրի՛կ, քեզ չե՞ն սովորեցրել, որ չի կարելի ծեծել փոքրերին:

— Սովորեցրել են,— պատասխանեցի ես՝ քիթս կախած:

— Բայց դու այդ չես անում: Դա լավ չէ...

Անցան շատ օրեր: Եվ ես մնում էի նույն չարաճճին: Մի օր էլ կատվի հետևից վազելիս, հանկարծ դեմս ելավ մի մեծ բեռնատար: Ինձ կգացի մեքենայի առաջ: Հանկարծ մեկը բռնեց թևից և ես մի ակնթարթում հայտնվեցի ճանապարհից դուրս: Իմ փրկարարը 10-րդ դասարանցի մի աղջիկ էր: Երբ սթափվեցի, ինձ էին հառված վախով ու նախատինքով բազմաթիվ աչքեր: Ես սկսեցի ամոթից լալ: Այդ ժամանակ կգացի, թե ինչքան լավ է, երբ օգնում են փոքրին: Ի՞նչ կլիներ, եթե ինձ չօգնեին: Սարսափելի է մտածել: Այդ դեպքից հետո ես այլևս վատ չեմ վարվում ինձնից փոքրերի հետ, ընդհակառակը, սկսեցի օգնել:

*ՄԱՐԳԱՐԻՏ ՄԿՐՏՉՅԱՆ*

*Եղեգնաձորի շրջ., գ. Չիվա, 6-րդ դաս.*



ՏԻԳՐԱՆ ՄԱՅԻԼՅԱՆ, 8 տ., Երևան



ՏԻԳՐԱՆ ԱՂԱԲԱԲՅԱՆ, 6 տ., Երևան

# ՌԻԿԿԻ

ՄԱՐԳՈ ՂՈՒԿԱՍՅԱՆ



## 3. ՌԻԿԿԻԻՆ ԻՋԵՑՆՈՒՄ ԵՆ ԳՆԱՑՔԻՑ

Յողինարն ու Սահակը շանը նվիրեցին իրենց հորեղբոր տղային: Վերջինս մի երեք օր Ռիկկիի հետ շրջեց ընկերների տները, ցուցադրեց իր հասկացող, լսող, մաքրակենցաղ շանը: Չորրորդ օրը հորեղբայրը զանգահարեց Յողինարին. «Սիրելի զարմուհիս, լսո՞ւմ ես: Այս ի՞նչ փորձանքի մեջ ես գցել մեզ: Որդիս դարձել է շուն խաղացնող: Խոնարհաբար հրաժարվում ենք նվերից և խնդրում ենք ետ վերցնել»:

Յողինարը զգում էր, որ իր ուսուցիչ հորեղբայրը հազիվ է զսպում զայրույթը և դրա համար բառերը հատուկ շեշտում է: Եվ ասածն այնպես կեղծ է հնչում, կարծես բեմից վատ դերասան է խոսում: Միաժամանակ նա լսում էր, թե իր հորեղբոր տղան ինչպես է հորը խնդրում. «Լավ էլի, հայրիկ, մի քիչ էլ թող, խնդրում եմ»:

Ճար չկար: Հեռախոսափողը վայր դնելուց հետո Յողինարը մի քիչ մտածեց և ինքն էլ իր հերթին զանգահարեց Տիգրանին, թե՝ այսպես ու այսպես, չգիտեմ ինչ անեմ:

Տիգրանի ընկերները՝ Արամ և Անդրանիկ եղբայրները որոշեցին վերցնել Ռիկկիին ու գարնան կողմ տանել գյուղ՝ Խաչեվարդ պապի տուն: Այնտեղ և՛ այգի կա, և՛ անտառ, բացի այդ՝ շունը մի բանի պետք կգա, կհսկի տունն ու այգին: Այդ որոշման համար ամենից շատ ուրախացել էր Տիգրանի մայրը, որը անընդհատ կրկնում էր. «Վերջապես խեղճ կենդանին մի հար-

# ...ՇԱՆ ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆԸ

Նկ. ԱՆՈՒՇ ՏԵՐ-ՄԻՆԱՍՅԱՆԻ

մար բույն կունենա, կվազվզի խոտերի մեջ և այլևս չի թափառի տնից տուն»:

Եվ այդպես շան հերթական տերերը դարձան Արամն ու Անդրանիկը: Երբ առաջին օրը Ռիկկիին բերեցին իրենց տուն, շունը չէր ուզում շքամուտքից ներս մտնել: Ոտքերը կարծես սոսնձված լինեին գետնին, և նրան տեղաշարժելու համար ստիպված էին ոչ միայն պարանից քաշել, այլ նաև ետևից հրել: Վերջապես Անդրանիկն ու Արամը կարողացան տուն մտցնել: Հիմա էլ շունը դունչը դրած թաթերին, խռովածի նման կուչ է եկել դռան ետևը. ո՛չ ջրին է մոտենում, ո՛չ էլ կերակրի ամանին: Այդպես մի ամբողջ շաբաթ: Հետո վարժվեց: Ավելի ուշ շունը երկու եղբայրներին այնքան նվիրվեց ու այնքան սիրեց, որ նրանց տուն գալը զգում էր, երբ դեռ տղաները առաջին հարկում էին. Ռիկկին ուրախ ցատկոտում էր, դուռը հոտոտում ու պոչը աշխույժ թափահարում այնքան, մինչև Արամի ու Անդրանիկի մայրն ասում էր. «Լավ, հասկացանք, ի՞նչ ես խառնվել իրար, եկան, եկան»: Նա դուռը բացում էր նախքան որդիները կհնչեցնեին զանգը: Ռիկկին երբեք չէր սխալվում: Այդուհանդերձ նա կամակոր էր դարձել: Եվ իր այդ նոր հատկությունը հատկապես դրսևորում էր փոքրի՝ Արամի նկատմամբ: Երբ Արամը հագնում էր իր մոխրագույն անդրավարտիքը, դառնում էր Ռիկկիի աչքի լույսը: Շունը թռչկոտում էր նրա շուրջը, քսվում Արամի ոտքերին, երբեմն կանգնում էր ետևի ոտքերի վրա ու առջևի թաթերով կախվում տղայի գոտուց: Արամը չէր բարկանում ու չէր ասում. «Կորի՛, թաթերովդ չնախշե՛ս», ինչպես այդ անում էր սև անդրավարտիքի դեպքում: Պետք է խոստովանել, որ սև անդրավարտիքը հատուկ պատվիրված էր հանդիսավոր օրերի համար: Հենց այդ էր պատճառը, որ Արամը հրամայում էր Ռիկկիին. «Հեռո՛ւ, երես չառնե՛լ»: Պարզ է, չէ՞, շան թաթերի հետքը կմնար անդրավարտիքի վրա: Իսկ երիտասարդի համար կեղտոտ անդրավարտիքով ժամադրության կամ հյուր գնալը պատշաճ չէ, ինչպես որ պատշաճ չէ սխտորով ճաշ ուտելուց հետո համերգ կամ հանդիպման գնալը:

Շունը հենց նկատում էր սև անդրավարտիքը Արամի հագին, խռովում էր ու թաքնվում մահճակալի տակ: Նա նույնիսկ հրաժարվում էր ճաշից՝ իբր տաք է, և դա տևում էր այնքան ժամանակ, մինչև նրան կոնֆետ կամ շաքար էին տալիս:

Անդրավարտիքի հետ կապված կամակորությունը դեռ մի կողմ: Ռիկկին տանել չէր կարողանում բարձր խոսակցությունը: Երբ երկու եղբայր բարձրաձայն վիճում էին, շանը թվում էր, թե նրանք կռվում են, ու կանգնելով եղբայրների մեջտեղում, անհանգիստ ցատկոտում էր մեկ մեկի, մեկ մյուսի կողմը՝ բը՜ռ... Կարծես դրանով ուզում էր լռեցնել նրանց: Դա այնքան ակնհայտ էր, որ տղաները գլխի ընկան և դա ի վնաս Ռիկկիի: Պատահում էր, որ նրանց տանն էին հավաքվում ընկերները և կեղծ վիճաբանություն սարքում Ռիկկիի խաղաղասիրությունը ցուցադրելու համար: Եվ այդ ժամանակ խեղճ կենդանին պոչի շուրջը պտտվում էր ու հարձակվում՝

Նայած թե ով էր կռվազան ձայնով խոսում: Կամ ձեռքերը թափահարում, իբր այնպիսի մի ապտակ կհասցնեմ: Շունը գազազում էր, ճանկռոտում «կռվողների» կոշիկներն ու գոռում՝ բըռ՜ռ: Մայրը ստիպված էր լինում միջամտել. «Վերջ տվեք, դաժանություն է ձեր արածը»:

Օրերից մի օր Անդրանիկն ասաց.

— Սիրելի՛ս իմ մայրիկ, իմացած լինես, որ վաղը շաբաթ է, Ռիկկիին գյուղ ենք տանում:

Մոր ուզածն էլ հենց այդ էր: Վերջին ժամանակներս շան մազերը հայտընվել էին բազմոցին ու աթոռներին, նույնիսկ մահճակալի ծածկոցներին: Ու հիմա, մայրը չնայած ներքուստ ուրախացել էր, բայց այնքան էլ չէր հավատում: «Խելքները գնում է այս երկարամռութի համար»:

Եղբայրները պատրաստություն տեսան գյուղ գնալու: Նրանք երկու օր պետք է մնային Խաչեվարդ պապի տանը և փոքր ճամպրուկում դասավորում էին գրքերը, լուսանկարչական ապարատը:

— Ո՞ւր է Ռիկկիի երկրորդ վզկապը,— հարցրեց Անդրանիկը:

Լսելով իր անունը, շունը ականջները սրեց: Նա տեսավ, թե ինչպես Արամը խորդանոցից բերեց վզկապը, որի վրա փայլուն օղ կար: Այդ պահից սկսած՝ շունը գլխի ընկավ, որ իրեն նորից վտարում են. նա սուսուփուս քաշվեց իր անկյունը, և ինչքան էլ տղաները կանչում էին, տեղից չէր շարժվում: Մի ամբողջ օր ոչինչ չկերավ:

— Խռովե՞լ ես, չգիտես ուր ենք տանում ու խռովե՞լ ես:

Համարյա երեք ամիս Ռիկկին մնացել էր այդ տանը, և Լուսեղեն մայրիկը ոչ մի անգամ նրա խաթրին չէր կպել: Որ սանենք անհանգստություն չէր պատճառում, ճիշտ չի լինի: Պարզապես Լուսեղեն մայրիկը շատ համբերող էր: Նա սպասում էր, որ մի հարմար օր շանը գյուղ կտանեն ու առանց դժգոհելու իրենց նեղվածք բնակարանը օրը մի քանի անգամ մաքրում էր, որովհետև ինչքան էլ հասկացող ու լսող, բայց վերջապես շուն էր, չորքոտանի, որ պետք է գետնի վրա վազեր, խոտերի մեջ գլուխկոնծի տար, սլանար կատուների ետևից, ինչպես որ անում էր, երբ նրան փողոց էին տանում: Եվ ահա չորս պատերի մեջ փակված, նեղվածք այդ բնակարանում, գնալով, կարծես ավելի հաճախ էր ոտի տակ ընկնում, և հետաքրքրությունն էլ նրա հանդեպ նվազում էր: Շունը տեղի-անտեղի վնգստում էր ու գլուխ տանում, կարծես դիտմամբ թաթը դնում էր կերակրի ամանի մեջ ու շրջում հատակին:

Ինչևէ: Անցավ այդ գիշերը ևս: Արամն ու Անդրանիկը Ռիկկիի հետ գնացին երկաթուղային կայարան: Նրանք արդեն բարձրացել էին վագոն, և Ռիկկին էլ նրանց ետևից ցատկեց երկաթե բարձր ոտնակին: Այդ ժամանակ գնացքի ուղեկցողը ստուգեց տղաների տոմսերը և հանգիստ ձայնով ասաց.

— Խնդրում եմ ցո՛ւյց տաք անասնաբույժի տեղեկանքը:

Տղաները շփոթվեցին.

— Տեղեկա՞նք, չունենք:

— Այդ դեպքում խնդրում եմ շանը իջեցնեք գնացքից,— դարձյալ հանգիստ ասաց ուղեկցողը:

Եղբայրները բացատրեցին, որ Ռիկկին շատ մաքուր է. հենց այսօր առավոտյան նրան լողացրել են օճառով և որ վրան ոչ մի միջատ չկա:

— Այդ դուք եք ասում, բայց ինձ պետք է ձեր ասածը հաստատող տեղեկանքը ստորագրությամբ և կնիքով,— անառարկելի ձայնով ասաց ուղեկցողը և ավելացրեց.— Չենք վինում, օրենք է:

Այդ ամբողջ խոսակցության ընթացքում, Ռիկկին կամուկասի մեջ կանգնած էր վագոնի վերին ոտնակին ու մեկ նայում էր ուղեկցողին, մեկ իր սիրելի տերերին: Ճար չկար, տղաները իջան գնացքից և տուն վերադարձան:

— Ափսո՜ս,— ասացին նրանք,— ի՜նչ սքանչելի օրեր էինք անցկացնելու գյուղում: Մնում է, որ Վաղինակ հորեղբայրը համաձայնի իր մեքենայով տանել: Իսկ մենք կգնանք, երբ հարմար առիթ կլինի:

Մի երկու օր հետո Վաղինակ հորեղբայրը գնալու էր գյուղ՝ Խաչեվարդ պապին այցելության. նա համաձայնեց շանը իր հետ տանել:

Գնալու օրը Վաղինակ հորեղբայրն իրերը դասավորեց ավտոմեքենայի պահոցում ու իր զարմիկներին ասաց.

— Շանը տեղավորեք ետնամասում, վզկապը հանեք, ապակիները կբարձրացնեմ:

— Ռի՛կկի, նե՛րս,— ձեռքով ցույց տվեց Անդրանիկը:

Շունը ցատկեց ներս և սպասողական նայեց Անդրանիկին: Վերջինս արագ հրեց դուռը և նշան արեց հորեղբորը՝ կարո՛ղ ես գնալ: Շունը բարձրացավ ետևի նստատեղին ու դունչը կպցրեց ապակուն: Եղբայրները կանգնած էին մայթին և նայում էին շանը, որը երկարուկ դունչը քսում էր ապակուն և կարծես գլուխը օրորում էր: Հորեղբայրն արագացրեց ընթացքը: Քանի դեռ շունը երևում էր, միշտ նույն դիրքում էր:

— Լաց չլինի՞,— ասաց Արամը:

Անդրանիկը չպատասխանեց, նա մեղավոր ու տխուր հայացքով նայում էր այն ուղղությամբ, որով սլանում էր մեքենան: Դա թախծալի այն պահերից էր, երբ մարդ մի որոշում է ընդունում իր ցանկության հակառակ, բայց և այլ կերպ վարվելու ճար չունի:

Հաջորդ օրը, երբ հորեղբայրը վերադարձավ, զարմիկներին ասաց.

— Կարծես լաց էր լինում խեղճ շունը, մռռացնում էր ու թաթերով ճանկռում ապակին: Եթե իջեցրած չլինեի, անպայման դուրս կցատկեր:

Հիանալի օրեր էին, և տղաները պատրաստվում էին հաջորդ շաբաթ Խաչեվարդ պապին հյուր գնալ:

## Ծպիտներ

Ի. Մ. Սեչենևի «Գլխուղեղի ռեֆլեքսները» գիրքը երբ տպագրվեց, ցարական գրաքննությունը արգելեց այն: Խոսք կար նույնիսկ հայտնի ֆիզիոլոգին դատի տալու մասին: Նրան խորհուրդ տվին մի լավ փաստաբան վարձել:

— Իմ փաստաբանը գործն է լինելու,— ասաց Սեչենևը,— ես գործը կտանեմ դատարան և դատավորների առաջ իմ բոլոր փորձերը կանեմ:



Միլան գնալիս իտալացի նշանավոր երգիչ Էնրիկո Կարուզոն կանգ առավ մի պանդոկում:

— Դու ինչո՞ւ ես այդ մարդուն այդպիսի հետաքրքրությամբ նայում,— հարցրեց պանդոկապանը այցելուներից մեկին:

— Որովհետև դա Կարուզոն է:

— Կնի՞կ, այ կնի՞կ, երեխանե՞ր,— աղաղակեց երջանիկ պանդոկապանը,— շուտ դուրս եկեք տանից, մեր պանդոկն է եկել մեծ ճանապարհորդ Ռոբինզոն Կրուզոն:





Փոքրիկների համար

# ԽԵԼԱՑԻ ԿԱՏՈՒՆ



Նկ. ԿԱՐԵՆ ՍՄԲԱՏՅԱՆԻ

— Առյուծը բոլոր կենդանիներից ուժեղ է.— ասաց կատուն,—լավ է ուժեղ ընկեր ունենալ, գնամ ընկերանամ:

Նա առյուծի հետ երկար ընկերություն արեց: Մի անգամ զբոսնելիս նրանք հանդիպեցին փղին: Փիղը սկսեց կռվել առյուծի հետ և հաղթեց նրան:

Կատուն շատ վշտացավ:

— Ի՞նչ արած,— մխիթարեց իրեն,— փիղն ուժեղ է առյուծից, լավ է՝ փղի հետ ընկերություն անեմ:

Այդպես էլ արեց:

Մի անգամ անտառում հանդիպեցին որսորդին: Որսորդը կրակեց, և փիղն ընկավ:

— Որսորդն ավելի ուժեղ է,— մտածեց կատուն և մոտեցավ նրան.

— Կարելի՞ է ձեզ հետ գալ...

— Խնդրեմ, գնանք,— ասաց որսորդը:

Գնացին որսորդի տուն:

Նախաշեմին կինը մոտեցավ ամուսնուն և զենքը վերցրեց ձեռքից: Երբ կատուն այդ նկատեց, մտածեց, որ կինն ամենաուժեղն է, կարող է վերցնել որսորդի զենքը և ոչ ոք չի կարողանա հաղթել նրան...

Որսորդը նստեց սեղանի մոտ, իսկ կինը գնաց խոհանոց: Կատուն վազեց կնոջ ետևից և որոշեց ընդմիշտ մնալ այնտեղ:

Ահա թե ինչու է կատուն միշտ խոհանոցում, տանտիրուհու ոտքերի մոտ...

Անգլերենից թարգմ. ԼԱԼԱ ՄԱԼԽԱՍՅԱՆԸ

*«Լուսաբեր»-ից*

# ԱՅՈՆ ՈՒ ՈՉԸ

1

Այոն մի պստիկ աղջիկ էր, աչքերը՝ կրակոտ, շրթունքները՝ ժպտուն, պայծառ: Երբ մայրիկն ասում էր առավոտը. «Երեսդ լվա՛, շորերդ սրբի՛», աղջիկը պատասխանում էր. «Այո՛, մայրիկ, իսկույն»: Երեսը միշտ մաքուր էր, մազերը՝ սանրած, շորերի վրա՝ ոչ մի բիծ:

Ոչը մի պստիկ դանդաղկոտ տղա էր, հոնքերը՝ կիտած, շրթունքները՝ ուռցրած, քիթը՝ կախ: Երբ մայրն ասում էր. «Երեսդ լվա՛, շորերդ սրբի՛», տղան պատասխանում էր. «Ո՛չ, չեմ ուզում, ո՛չ»: Երեսը մրոտ էր, մազերը՝ գզգզված, շորերը՝ փոշոտ:

Ճաշի ժամանակ, երբ մայրիկն ասում էր Այոյին՝ «Անձեռոցի՛կ կապի, նստի հացդ կե՛ր», աղջիկը կանչում էր. «Այո՛, մայրիկ, իսկույն: Այս ի՜նչ համով կերակուր է»:

Երբ Ոչին ասում էին. «Անձեռոցի՛կ կապի, նստի հացդ կե՛ր», նա կոպիտ աղաղակում էր. «Ո՛չ, չեմ կապի, ո՛չ: Այս ի՜նչ անհամ կերակուր է»:

2

Երբ մթնում էր ու մայրիկը ձայն էր տալիս Այոյին՝ «Ժամանակն է, հանվի՛ ու պառկի՛», աղջիկը տեղից վեր էր թռչում. «Այո՛, մայրիկ, իսկույն: Բարի գիշեր, հայրի՛կ, բարի գիշեր, մայրի՛կ»:

Ոչը երբեք ինքը չէր գնա քնելու, ոտները գետնին էր զարնում, համառում էր. «Ո՜չ, չեմ քնի, ո՛չ»: Զոռով պետք է շորերը հանեին, անկողին պառկեցնեին:

Երբ Ոչը հյուր էր գնում մի տեղ ու զանգը տալիս, ամենքը դժգոհ էին լինում և մտածում էին. «Ո՜ւֆ, նորից եկավ», ու շատ անգամ նրա քթի առջևը դուռը փակում էին:

Երբ Այոն զանգը տալիս էր, առաջն էին վազում. «Այ, բարի՜ ես եկել, հրամմե՛ ներս», ու դռները լայն բաց էին անում:

Ի՜նչ ծիծաղ էր և ուրախություն այնտեղ, որտեղ Այոն էր:

Ի՜նչ ձանձրույթ ու լռություն էր այնտեղ, որտեղ Ոչն էր:





# Միլիցիայի պատանի ԲԱՐԵԿԱՄՆԵՐԸ

Երևանի Օրջոնիկիձեի շրջանի պիոներների և դպրոցականների պալատի միլիցիայի պատանի բարեկամների ակումբի հերթական պարապմունքն անցկացվում էր... երկաթուղային կայարանի կառամատույցում: Հերթապահության ժամ է պատանի միլիցիոներների համար: Մարինեն, Կարմենը, Արամը, Մանվելը շրջում են կարմիր թևկապներով: Նրանց հետ է տրանսպորտային միլիցիայի անչափահասների տեսչության ավագ լեյտենանտ Վարդան Սարգսյանը: Խնդիրը պարզ է՝ հետևել հասարակական կարգուկանոնին: Թվում է, թե նրանց ներկայությունն արդեն բավական է, որ կառամատույցում ոչ մի արտակարգ դեպք չպատահի, բայց...

Ահա, ինչպես ծանոթ դետեկտիվում, որտեղից որտեղ հայտնվում է իրենց տարիքի մի տղա, ճամպրուկը ձեռքին: Նա քայլում է հպարտ-հըպարտ և դեռ... սուլում է: Դա ավելի է մատնում նրա շփոթվածությունն ու վախը, և միլիցիայի պատանի բարեկամները շտապում են պարզել պատճառը:

— Ո՞ր դպրոցում ես սովորում,— հարցնում են կարմիր թևկապավորները:

Տղան չի պատասխանում, միայն նայում է կոշիկների ծայրին:

— Ո՞ւր ես գնում:

Դարձյալ ոչ մի պատասխան:

— Անունդ կարող ե՞ս ասել...

# ՆՈՅԵՄԲԵՐԻ 10-Ը ՍՈՎԵՏԱԿԱՆ ՄԻԼԻՑԻԱՅԻ ՕՐՆ Է



Անհասկանալի քրքջում է։

— Այդ ի՞նչ ճամպրուկ է ձեռքիդ։

— Չեմ գողացել, ազնիվ խոսք, մեր տան ճամպրուկն է,— կմկըմում է տղան։

Քիչ է մնում արտասվի այն մտքից, որ իրեն կարող են կասկածել գողության մեջ։ Մի՞թե կարելի է գողանալ։ Իսկ կարելի՞ է ինքնագլուխ արկածային ճանապարհորդության մեկնել առանց ծնողների գիտության։ Միլիցիայի պատանի բարեկամները անծանոթ տղային տանում են անչափահասների տեսչություն։

Հետո շարունակվում է ներթապահությունը, շարունակվում է պարապմունքը կառամատույցում, ապա պիոներների պալատում խմբակի ղեկավար Ժաննա Ավետիսյանը ամփոփում է օրվա արդյունքները և պարապմունքի գնահատականը՝ «գերազանց»։

Դուք անհամբերությամբ սպասում եք, թե ինչ եղավ փախստական տղան և կամ ուրիշ ինչպիսի՞ հետաքրքիր գործեր են կատարել մեր ակնարկի հերոսները։

Այդ ամենի մասին իր օրագրում բավական ուշագրավ նշումներ է կատարել ակումբի ավագը՝ Մարինե Խաչատրյանը, որից իմանում ենք, որ նրանք պարզել են կառամատույցում թրևող փոքրիկ փախստականի ով լինելը, նա Երևանի № 128 դպրոցի 6-րդ դասարանի աշակերտ Վ. Գ.-ն էր։ Իհարկե, նա աչքի չի ընկնում ուսման մեջ, հասարակական աշխատանքներում, բայց չի նշանակում, թե խըմբակի անդամները մոռացության կամ անտարբերության կմատնեն նրան։ Դասարանի պիոներական ջոկատի հետ վերցրել են նրա շեֆությունը, որպեսզի օգնեն ամեն մի գործում, ուղիղ ճանապարհի բերեն։

Պարապմունքներից մեկն էլ անց են կացրել Երևանի № 50 մանկապարտեզում։ Պարապմունքի թեման է եղել՝ «Որպեսզի փողոցում ճիշտ քայլես»։ Փոքրիկ Լուսինեն, Ռուզաննան, Արմենը, Երվանդը ուշադրությամբ լսելուց հետո կարողացել են ճիշտ պատասխանել փողոցային երթևեկության կանոններին վերաբերող հարցերին։ Հաջորդ պարապմունքին նրանք կծանոթանան ճանապարհային երթևեկության տարբերանշաններին...

Այսպես, մեկը մյուսից հետաքրքիր և ուսանելի պարապմունքները շարունակվում են միլիցիայի պատանի բարեկամների ակումբում, և Մարինեի օրագրում դրանցից յուրաքանչյուրի մասին հիշատակվում է։

Խմբակի անդամները սիրում են իրենց գործը և միշտ հաճույքով են կանգնում «մարտական պոստում»։

ՍԱՄՎԵԼ ԿԱՐԱՊԵՏՅԱՆ

Լուսանկարները՝
ՏԻԳՐԱՆ ՓԱՇԱՅԱՆԻ



ՅԱՐՈՍԼԱՎ ԽԱՐԵՉԿՈ

# «Ոչինչ չեմ տեսնում, Ոչինչ չեմ լսում, Ոչ ոքի ոչինչ չեմ ասի»: (վերնագրի փոխարեն)

ՖԵԼԻԵՏՈՆ



Ես մինչև հիմա չեմ հասկանում, սիրելի՛ դասընկերներ, թե ինչու հուշելը համարվում է «արջի ծառայություն»:

Լա՛վ, ասենք թե եղել է մի արջ, որը ֆիզիկայից գաղափար չի ունեցել և աղվեսին ասել է, թե սառցանցքից կարելի է պոչով ձուկ բռնել... Եվ աղվեսի պոչը սառցանցքի մեջ սառել-մնացել է: Բայց հո չի՞ կարելի մի հիմար արջի օրինակով դատել բոլոր արջերին:

Ո՛չ, ընկերնե՛ր, հուշելը մեր գյուտն է, և արջն այստեղ գործ չունի: Արջերը թող միայն իրենց թաթով մեր ականջը չփակեն: Քանի որ հուշելու համար ականջը շատ է հարկավոր: Նա, ում ականջները մշտապես մաքուր են և ունի երաժշտական բացարձակ լսողություն, կարող է համարձակ դուրս գալ գրատախտակի մոտ, վստահ, որ «երեքը» գրպանումն է... այսինքն՝ օրագրում:

Ես մի վեցերորդ դասարանցու գիտեմ, որ կարող է լսել ամեն ինչ, եթե նույնիսկ լուսնի վրայից շշնջան: Ճիշտ է, այդ հեռավորության վրայից լսելն անօգուտ է, մինչև ձայնը նրան հասնի ու նա որսա, 2-ն արդեն զարդարած կլիներ նրա օրագիրը:



Եվ բացի այդ, ովքեր հուշում են, որպես օրենք, միշտ ունենում են սաստիկ վատ առոգանություն: Վաղեմի հույն հռետոր Դեմոսթենեսը վատ արտասանությունն ուղղելու համար պահանջում էր բերանը մանր քարեր լցնել և խոսել՝ բերանը քարերով լիքը: Իհարկե, ցանկացողները կարող են արտասանությունն ուղղել նաև բերանը լցնելով ազնվամորու կոնֆետներ կամ նուշի

հատիկներ: Բայց դրանք այնպես օգնել չեն կարող, ինչպես քարերը:

Կարելի է նաև սովորել ու հասկանալ շրթունքներով ասվածը: Ինքս էլ եմ փորձել: Ամբողջ մի տարի վարժություններ էի անում: Եվ ահա ինձ կանչում են գրատախտակի մոտ: Ես աչքս հառում եմ Գենկա Դավիդովին: Նա նայում է ինձ և առանց դադարի շարժում է շըրթունքները: Դասի կեսից ավելի ես կանգնեցի գրատախտակի առջև և Գենկայի շրթունքների վրա ոչինչ չկարդացի: Հետո, դասամիջոցին պարզվեց, որ նա բան չէր հուշում ինձ, իր համար հաց ու խոզապուխտ էր ծամում: Դրա համար նա լա՜վ ստացավ ինձանից:



Նկ. ԿԱՐԵՆ ՄԻՔԱՅԵԼՅԱՆԻ

Կարելի է հուշել նաև դիմախաղով, ձեռքերի, մատների շարժումով: Բայց ամեն մեկը այդ չի կարող: Ամեն մեկը այնպիսի արտահայտիչ դիմագծեր չունի, որ նրանց վրա կարելի լինի կարդալ բազմապատկման աղյուսակը կամ ծծմբաթթվի ֆորմուլան:

Մատներով խոսելը հեշտ է: Մատդ տար ականջիդ, նշանակում է՝ ասացիր «Ա», ցույց տուր հոնքդ, նշանակում է «Հ», նստարանը՝ «Ն», դուռն ես ցույց տալիս՝ «Դ», ուղտ՝ «Ու»... Միայն թե անհրաժեշտ բոլոր առարկաները հարկավոր է, որ ձեռքիդ տակ լինեն:

Դե՛, նաև, ինքնին հասկանալի է, երբեք չպետք է մոռանալ, թե մենք ո՛ր ժամանակներում ենք ապրում: Այժմ, երեք տրանզիստորից և երկու դիմադարձիչից հնարավոր է պատրաստել այնպիսի հաղորդիչ, որը կարելի է այտի տակ պահել և ունենալ այնպիսի ընկալուչ, որը տեղավորվի ականջի մեջ: Կոճակը լեզվով պտտիր և հուշիր: Ականջիդ տակը քորիր և լսիր: Ախր, ո՞ւր է թե հիմա՝ իմ սովորելու ժամանակ էլեկտրոնիկան այդքան զարգացած լիներ, ես ոսկե մեդալի տեր կըդառնայի: Իսկ առայժմ ստիպված ես ազնիվ ճանապարհով վաստակել այդ:

Որովհետև, երբ լրջորեն հույս դնես հուշելու վրա, հարկավոր է, որ նախ՝ ով հուշում է, բոլոր առարկաները անգիր գիտենա, այլապես ընկերոջը կարող է վատ վիճակի մեջ գցել: Եվ երկրորդ՝ նա, ում հուշում են, նույնպես պետք է բոլորը սովորի, որ իմանա հուշողը ճի՞շտ է հուշում:

Ահա, առայժմ այսքանը, սիրելի՛ ընկերներ... Իսկ հետևյալ անգամ թե ինչի մասին կարելի է գրել... գուցե ձեզանից մեկնումեկը հուշի: Ես որ այսքան խոսեցի, հո կուր չէ՞ր:

# ՍԻԼՎԱ ԷՄԻՐԶՅԱՆ

*Օլիմպիական հույսեր*

## ՕԼԻՄՊԻԱԿԱՆԻ ԹԵԿՆԱԾՈՒՆ

Սիլվան մանկապարտեզ էր հաճախում, երբ քույրը տարավ լողի պարապմունքների: Ջրացատկի մարզիչ Ջրաղացպանյանը, որն, ի դեպ, պատանիների մեջ մեծ ապագա խոստացող մարզիկներ ընտրելու հարցում երբեք չի սխալվում, իսկույն նկատեց փոքրիկ Սիլվային և մարզիչ Վասիլի Կուվշինկինին խորհուրդ տվեց նրան վերցնել ջրացատկորդների խմբում: Նոր մարզիչի մոտ Սիլվան օրը օրին լավ արդյունքներ էր ցույց տալիս: Սակայն ինչպես պատահում է հաճախ, առաջին լուրջ քննության ժամանակ անհաջող հանդես եկավ:



Ս. Էմիրզյանն իր մարզական հաղթարշավն սկսեց Տաշքենդում կայացած դպրոցականների համամիութենական 15-րդ սպարտակիադայից: Այստեղ նա նվաճեց սպարտակիադայի ոսկե մեդալը, լրացրեց միջազգային կարգի սպորտի վարպետի նորման, որը աննախադեպ հաջողություն էր տասներկուամյա մարզուհու համար: Հետագա համամիութենական և միջազգային բոլոր մրցումներում Սիլվան միշտ հաղթանակով է տուն վերադարձել, և զուր չէ, որ Սովետական Միության ճանաչված ջրացատկորդուհիները վեցերորդ դասարանցուն համարում են իրենց ամենալուրջ մրցակիցը:

Սիլվան նաև օլիմպիականի հավաքականի թեկնածու է...

## ԻՍԿԱԿԱՆ ՄԱՐԶԻԿԸ ՉԻ ԸՆԿՃՎՈՒՄ



Նույնպես ջրացատկորդ է, և նույնպես մեծահասակները լուրջ մրցակից են համարում:

— Սպարտակիադայում լողը գաղկից հետո միայն Սիլվան էր ինձնից առաջ անցել, բայց






Երևանի № 10 գիշերօթիկ դպրոցը դեռևս չի բոլորել իր հիմնադրման տասը տարին, բայց արդեն մեծ ճանաչում ունի մարզադպրոցների շրջանում և ներկայումս համարվում է Միության հինգ լավագույն դպրոցներից մեկը: Միայն վերջին երկու տարում դպրոցը տարբեր մարզաձևերից ՍՍՀՄ տասնմեկ չեմպիոն է տվել: Տասից ավելի աշակերտներ դարձել են միջազգային կարգի և ՍՍՀՄ սպորտի վարպետներ: Ֆուտբոլային թիմերը միշտ մրցանակային տեղեր են գրավում հանրապետական ու միութենական առաջնություններում:

վերջին՝ ութերորդ ցատկը չզգացի և... զրկվեցի արծաթե մեդալից:

Արյուսակը դառնությամբ է հիշում այդ փաստը: Սակայն այդ անհաջողությունը չի ընկճել իսկական մարզուհուն: Սպարտակիադայից հետո՝ այս մեկ տարվա ընթացքում, նա մասնակցել է համամիութենական և միջազգային բազմաթիվ մրցումների և միշտ մրցանակային տեղեր գրավել, իսկ Դուշամբեի բաց առաջնությունում առաջինը ճանաչվեց և տիրեց գավաթին:

## ՊԵՏՔ Է ՎՍՏԱՀ ԴՈՒՐՍ ԳԱԼ ՌԻՆԳ

Արմեն Քարամյանի մուտքը բռնցքամարտ թե՛ անսպասելի էր և թե՛ հիանալի: Մինչև տասներեք տարեկանը նա հեռու էր կանգնած բռնցքամարտից: Իսկ տասնհինգ տարեկանում նրա անունն արդեն հայտնի էր մասնագետներին, և հանրապետական ու միութենական մրցումներից միայն հաղթանակով էր վերադառնում: Արմենը



ը ամենամեծ հաջողության հասավ այս տարի Բելց քաղաքում անցկացված Սովետական Միության երիտասարդական առաջնությունում: Ութերորդ դասարանցի աշակերտը միմյանց ետևից նոկաուտով հաղթեց արդեն ճանաչում գտած շատ երիտասարդ մարզիկների և գրավեց առաջին տեղը 60 կիլոգրամ քաշայինների կարգում:

## ՄԻՇՏ ՄԵԿ ՄԻԱՎՈՐ ՉԵՐ ԲԱՎԱՐԱՐՈՒՄ

Գարեգին Քոչարյանին մարզիչները դասական ըմբշամարտի վարպետ են համարում: ՍՍՀՄ երիտասարդական առաջնության կրկնակի չեմպիոնը (1978, 1979 թթ.) ըմբշամարտով սկսել է պարապել հինգերորդ դասարանից: Մեկ տարի անց Գարեգինը երկրորդ տեղը գրավեց Կիևում անցկացված համամիութենական մրցումներում:

Լատվիայի Լիեպայա քաղաքում ըմբշամարտի մրցումները նվիրված էին Սովետական Միության կրկնակի հերոս, օդաչու Նելսոն Ստեփանյանի հիշատակին: Այնտեղ Գարեգինը գրավեց առաջին տեղը: Լվովի համամիութենա-



կան մրցումներում մեկ միավորով զրկվեց առաջին տեղից: Գիշերօթիկ դպրոցների առաջնությունում երկար ժամանակ մեկ միավորով ետ էր մնում Կրիշիլինից, բայց վճռական մարտում հաղթեց նրան և գրավեց առաջին տեղը: Ութերորդ դասարանցի աշակերտը վստահ հանդես եկավ հատկապես Գոմելում անցկացված ՍՍՀՄ պատանեկան առաջնությունում և դարձավ չեմպիոն:

## ԴԺՎԱ՞Ր Է ՉԵՄՊԻՈՆ ԼԻՆԵԼ

Տասներորդ դասարանցի Արթուր Հակոբյանը միութենական և միջազգային տարբեր մրցապարեզներում արդեն տասնմեկ գավաթի է տիրացել և վերջին երկու տարիների ՍՍՀՄ երիտասարդական խաղերի բացարձակ չեմպիոն է: Միայն դպրոցականների սպարտակիադայում մի ոսկի, մի արծաթե և մի բրոնզե մեդալ շահեց: Մայիսին Քիշնևում կայացած համամիութենական մրցումներում հիանալի հանդես եկավ և տուն վերադարձավ հինգ ոսկե ու մեկ արծաթե մեդալով: Սպորտային մարմնամարզության բոլոր մասնագետները մեծ հույսեր են կապում նրա հետ, թերևս դա է պատճառը, որ նաև խստապահանջ են Արթուրի նկատմամբ: Պետք է միշտ նախորդ ելույթներից լավ հանդես գալ, այլապես միավորների կորուստը անխուսափելի է: Արթուրը լավ է գիտակցում այդ և հունիսին



ԳԴՀ-ում անցկացված ՍՍՀՄ-ԳԴՀ մրցումներից տուն վերադարձավ երեք ոսկե և մեկ արծաթե մեդալով: Խոստումնալից մարմնամարզիկը ՍՍՀՄ օլիմպիկան հավաքականի թեկնածու է:

## ԴԵԼՖԻՆԻ ՃԿՈՒՆՈՒԹՅԱՄԲ ԼՈՂՈՐԴՈՒՀԻՆ

Երբ Արմենուհին լողավազան է մտնում, անկախ այն բանից, թե ինչպիսի արդյունք ցույց կտա, մարզասերները մեծ հաճույքով են հետևում դելֆինի ճկունությամբ լողացող 10-րդ



դասարանցուն: Արմենուհի Մկրտչյանը գերազանց հանդես եկավ ԳՖՀ-ում անցկացված միջազգային մրցումներում և բատերֆլայ լողաոճում հաղթող ճանաչվեց: Վանիկ Փիլոյանի սանն իր հավասարը չունեցավ նաև ՍՍՀՄ առաջնությունում և արժանացավ չեմպիոնի կոչման:

Արմենուհին բազմիցս բարելավել է հանրապետության նախկին ռեկորդները՝ տարբեր լողաոճերից:

## ԱՌԱՋԻՆ ԱՆԳԱՄ

Ակրոբատների քառյակը, որի մեջ է նաև իններորդ դասարանցի Լևոն Ղազախյանը, հաճախ



է մասնակցում մրցումների և նրա ելույթները մի քանի անգամ ցուցադրվել են կենտրոնական ու հայկական հեռուստատեսությամբ: Քառյակը լավագույն արդյունքի հասավ հատկապես Բրյանսկում կայացած ՍՍՀՄ առաջնությունում և գրավեց առաջին տեղը: Այդ հաջողությունը մեծ մասամբ պայմանավորված էր նաև Լևոնի գերազանց ելույթով: Ասենք, որ հայկական ակրոբատիկայի պատմության մեջ մեր մարզիկներն առաջին անգամ են հաղթող ճանաչվում:

## ՀԱՋՈՂՈՒԹՅԱՆ ԵՐԱՇԽԻՔԸ



Նրա մարզական ճանապարհը այնքան էլ հարթ չեղավ: Սպորտային մարմնամարզության ասպարեզում դժվար էր աչքի ընկնել, որովհետև դրա փորձված, ճանաչում գտած մարմնամարզիկները շատ-շատ էին: Սակայն Կարենը չէր հուսահատվում և համառորեն մարզվում էր: 1979 թվականը արգասաբեր եղավ նրա համար: Տարեսկզբին Կարենը դարձավ արհմիությունների կենտրոնական խորհրդի մրցումների հաղթող, իսկ այնուհետև գերազանց հանդես եկավ Լենինգրադում կայացած ՍՍՀՄ պատանեկան առաջնությունում և դարձավ չեմպիոն:

## ԾԱՆՐՈՐԴԸ

Վերջին տարիներին հայ ծանրորդների առաջընթացն ակնհայտ է: Համաշխարհային ճանաչում ստացած լենինականցի դյուցազուններ Յուրի Վարդանյանի և Վարդան Միլիտոսյանի անունների կողքին այսօր իրենց ուրույն տեղն են գտել նաև շատ նոր անուններ: Դրանցից է և մարզադպրոցի սան Օգսեն Միրզոյանը, որն արդեն ՍՍՀՄ երիտասարդական առաջնության կրկնակի չեմպիոն է: Իսկ վերջերս Կազանում կայացած օլիմպիական չեմպիոն Ա. Կուրինովի հուշամրցումներում նա սահմանեց համամիութենական երիտասարդական երկու ռեկորդ, որոնք նաև Հայաստանի մեծահասակների ռեկորդներ են:



### Գիտե՞ք որ...



Ավելի քան 80 տարի առաջ, սպորտում «նեղ մասնագիտացման» մասին չէին էլ մտածում: Մարզիկները ոչ միայն բազմամարտիկներ էին ժամանակակից իմաստով, այլ երբեմն նաև պարզապես «համատեղողներ»:

Այսպես, 1896 թվականի օլիմպիական խաղերում ամերիկացի Ռոբերտ Հերտերը հաղթելով գնդի հրման և սկավառականետման մրցումներում, 2—3 տեղերը գրավեց նաև բարձրացատկում և և 2-ը՝ հեռացատկում: Դանիացի Վիգգո Ենսենը ոսկե և արծաթե մեդալներ շահելով ծանրության բարձրացման մրցումներում, արծաթե և բրոնզե մեդալներ նվաճեց և հրացանի ու ատրճանակի հրաձգությունում: Իսկ նրա հայրենակից Հոլգեր Նիլսենը հրաձգային սպորտում շահած իր երկու բրոնզե մեդալներին ավելացրեց նույնպիսի երկու մեդալներ՝ մասնակցելով թրադաշույնի մարտերին:




Կարապետը դպրոց չգնաց: Պայուսակը թափեց հարևան տան տանիքում և ձեռքերը գրպանները դրած, սկսեց թրև գալ փողոցներում:

Ուսուցիչները հարցեր պիտի տային, իսկ դասերը չէր պատրաստել, չպիտի կարողանար պատասխանել: Հաճելի բան չէր պապանձված կանգնել գլխիկոր՝ աշխարհի բոլոր մեղքերն իր ուսերին առած: Իսկ այսպես լավ էր... Եթե մայթեզրի ծառերից մեկին չառներ աչքը:

— Ինչ ես կարծում, տղա՛, ես փշատերև տեսակին եմ պատկանում, թե ... — հարցրեց ծառը:

Կարապետը որոշեց խուսափել պատասխանից, չմտածեց հայացքն հեռացնել, այլ իր հերթին հարցրեց նրան.

— Իսկ դու ի՞նչ տեսակին ես պատկանում, ինչ ես կարծում:

— Դու տղաների այն տեսակին ես պատկանում, որոնք փորագրում են մեր բների վրա, մեր ճյուղերը ջարդում են և իրենք էլ մինչև օրս ոչ մի ծառ չեն տնկել:

Իհարկե, այս խոսակցությունը եթե իրոք տեղի ունեցավ, ապա՝ լուռ: Այդ ծառը ետևում թողած, երբ Կարապետը ավտոբուս բարձրացավ, այժմ էլ նրա աչքը դեմ առավ մեքենայի մոտորին:

— Եթե ես ժամում երեսուներկու կիլոմետր արագությամբ եմ տանում մեքենան և քառասունչորս կանգառ ունեմ մինչև երթուղու վերջը, և ամեն կանգառում մնում եմ երկու րոպե, ապա, ինչքա՞ն ժամանակում կավարտեմ երթուղին, — հարցրեց մոտորը:

Կարպիսը որդեակի գլուխը չշոյեցնի, իր հերթին մտովին հարցրեց.

— Ես օրվա ընթացքում քանի կիլոմետր եմ քայլում, եթե իմ ոտքերի երկարությունը ինը ցենտիմետր է:

— Դու ինձ անգամ ավելի արագ ես գնում, երբ դասից փախչում ես, — ասում է մայրը և նորից կրկնում է իր հարցը՝ կանգառների թվով և սպասելով պատասխանին:

Բայց Կարպիսը նրա պատասխանը չլսած, ավտոբուսից իջավ և տրոլեյբուս նստեց: Տրոլեյբուսը մարդաշատ էր սաստիկ բեռնված լինելու պատճառով և Կարպիսին չնեղեց հարցերով:

Տրոլեյբուսը նրան հասցրեց քաղաքի ծայրամասը, որտեղից նրա առջև փռվեց դաշտավայրը, իր պտղատու այգիներով ու բանջարանոցներով: Կարպիսն ամենայն համեստություն չցուցաբերեց և մագլցելով առաջին հանդիպած ցանկապատից՝ հյուրասիրվեց երեք-չորս հասուն ու հյութալի դեղձով: Սակայն անհյուրընկալ, բայց բարեբախտաբար շղթայակապ շունը աղմուկ բարձրացրեց, հաչոցին զուգընթաց լսվեց տանտիրոջ սպառնալի գոռգոռոցը, և Կարպիսը հազիվ հասցրեց ցատկել ցած ու ծլկել, գրպանում թաքցրած մի քանի դեղձ:

Մաքուր օդից թե հոգնածությունից՝ Կարպիսը թմրել էր: Նա գտավ մի ավելի խաղաղ ցանկապատ ու նստեց իր բերքն աշխարհին արդեն բաշխած թթենու ներքո: Ի դեպ, Կարպիսի քաղած դեղձերը չհասցրին նրան հարցաքննել բուսաբանությունից: Կարպիսը կծում էր դեղձն ու նրա՛նց տված հարցն էլ հետը կուլ տալիս: Հենց իր կողքին նա տեսավ քարուքանդ ցանկապատի արանքներից դուրս ընկած մի դեղին գրքույկ: Այդ գիրքը Կարպիսին ոչ մի հարց չտվեց: Զարմանալին այն է, որ դա Կարպիսին չուրախացրեց: Նա իրեն զգաց մենակ ու լքված: Նա այդ լքվածությունն ավելի սուր զգաց, երբ քիչ հեռվում սուլեց շոգեքարշը և իր ետևից տարավ միմյանցից անբաժան վագոնների երկար շարժակազմը: Դեպի ու՞ր, ո՞վ գիտե... Մինչդեռ Կարպիսն ինքը մնում էր տեղում, միայնակ, տխուր, լքված: Նա պառկեց գրքի կողքին, որը ոչ մի հարց չուզեց տալ, որպեսզի Կարպիսն իր հերթին նրան ոչինչ չհարցնի: Կարպիսն ինքն էլ է իր ձեռքին մոլորվել: Նրան դուր չի գալիս ո՛չ պատասխանատվությունը, ո՛չ էլ դպրոցային այս փոխադարձ անպատասխանատվությունը: Ի վերջո նա քնեց խոր և առողջարար քնով, մաքուր օդին, ինչպես որ այդ հանձնարարում էր ֆիզկուլտուրայի ուսուցիչը:

Կարպիսն ինչ երազ տեսավ՝ տեղնուտեղը մոռացավ: Արթնացավ ահարկու խոխոցից: Բացեց քնաթաթախ աչքերը և տեսավ ահռելի գիրության մի խոզ, խժռում էր ցանկապատի ետևից անզգուշորեն դուրս սահած դդումը: Անձամբ Կարպիսին, իհարկե, վտանգ չէր սպառնում, բայց նրա տրամադրությունն ընկավ: Նա նայեց արեգակին և հասկացավ, որ դասերն արդեն վերջացած կլինեն: Ժամանակն է տուն գնալու:

ՋԵՐԱԼԴ ԴԱՐՐԵԼ

# ԳՅՈՒՏԱՐԱՐ ԿԵՆԴԱՆԻՆԵՐԸ

**Անգլիացի գրող և կենդանաբան Ջերալդ Դարրելի անունը քաջ հայտնի է մեր ընթերցողներին: Մեր ամսագիրը ձեր ուշադրությանն էր ներկայացրել նրա «Բաֆուտի բնրծեները» գիրքը, իսկ 1979 թ. 6-րդ համարում տպագրված էր «Իմ հոգեզավակները» հոդվածը:**

**Ստորև կրճատումներով տպագրում ենք մի հատված նրա «Հանդիպումներ կենդանիների հետ» նոր գրքից:**

Մի անգամ ինձ վիճակվեց Աֆրիկայից տուն վերադառնալ մի նավով, որի իռլանդացի նավապետը տանել չէր կարողանում կենդանիներին: Իսկ իմ ուղեբեռը, ինչպես միշտ, բաղկացած էր հիմնականում միայն վայրի կենդանիներից, որոնք այս անգամ զբաղեցնում էին մոտ երկու հարյուր վանդակ:

Նավապետը, թեև կեսկատակ, բայց առիթը բաց չէր թողնում արտահայտելու ընդհանրապես կենդանիների և մասնավորապես իմ գազանների նկատմամբ ունեցած իր քամահրանքը: Ես հերոսաբար հաղթահարում էի նրան առարկելու ցանկությունս, որովհետև, ընդհանրապես անխոհեմություն է վեճի բռնվել նավապետի հետ, քանի դեռ ծովում ես, իսկ եթե նավապետը նաև իռլանդացի է, ապա հայտնի չէ, թե ինչով կավարտվի ճանապարհորդությունը: Բայց երբ ուղևորությունը սկսեց մոտենալ ավարտին և Նավեզրից այն կողմ արդեն Լա Մանշի ջրերն էին ծփում, ես սկսեցի մտածել հատուցման մասին:

Ցուրտ երեկո էր, անձրևն ու քամին ուղևորներիս քշել էին ծխասրահ: Մենք նստած ծխում էինք և լսում ռադարների մասին ռադիոհաղորդումը:

Ռադարները այն ժամանակ դեռևս նորույթ էին և համընդհանուր հետաքրքրություն էին առաջ բերում:

— Իսկ ձեր կենդանիները ընդունակ չե՞ն նման բաների,— հաղորդման ավարտից հետո քմծիծաղով դիմեց ինձ նավապետը.— չնայած, եթե հավատանք ձեզ, նրանք բոլորն էլ մեկը մյուսից խելացի են:

— Եթե համաձայն եք գրազ բռնել հետս,— ասացի ես,— ապա խոստանում եմ առնվազն երկու խոշոր գիտական հայտնագործությունների օրինակով ապացուցել, որ դրանց գյուտը իրավամբ պատկանում է կենդանիներին:

— Ես ձեզ չորս օրինակի իրավունք եմ շնորհում,— ինքնագոհ պատասխանեց նավապետը,— սկսե՛ք:

— Մտածելու համար մե՛կ րոպե ժամանակ տվեք,— ասացի ես:

— Հը՜մ,— հաղթական քմծիծաղեց նավապետը:

— Պարզապես օրինակներն այնքան շատ են, որ դժվար է ընտրել լավագույնը,— շտապեցի ցրել նրա կասկածը:

Բայց նավապետն ավելի ու ավելի թերահավատ էր դառնում:

— Գուցե ռադարի՞ց սկսեք,— սրամտեց նա, ինքն էլ չհասկանալով, թե ինչ նվեր մատուցեց ինձ:

Ես անմիջապես հիշեցի չղջիկներին: Ռադարը՝ ուղարկած և անդրադարձած ձայնային ալիքներով առջևում եղած արգելքների մասին տեղեկություն ստանալը, փաստորեն փոխառնված է չղջիկից: Կատարված փորձերը լիովին ապացուցեցին այդ: Մեղրամոմով վարագուրված աչքերով չղջիկները սովորականի պես ետ ու առաջ են թռչում, ոչնչի չդիպչելով: Սակայն երբ փակեցին նաև ականջները, չղջիկն անմիջապես կորցրեց կողմնորոշումը: Բաց ականջներով, բայց գոցված բերանով ու քթով չղջիկը նույնպես անօգնական է: Պարզվեց, որ թռիչքի ժամանակ չղջիկն անդադար արձակում է ձայնային ազդանշաններ (վայրկյանում մոտ 30 ազդանշան), այնպիսի բարձր ձայնածավալով, որ մարդկային ականջն անկարող է այն ընկալել: Հանդիպելով արգելքի՝ ազդանշաններն անդրադառնում են կենդանու ականջը և վերջինիս տեղեկացնում արգելքների առկայության և դրանց հեռավորու-





թյան մասին: Հարց ծնվեց, թե չղջիկն ինչպե՞ս չի շփոթում ուղարկած և անդրադարձած ազդանշանները: Ռադարներում այդ հարցը լուծվում է էլեկտրական հարմարանքներով, իսկ ինչպե՞ս է դա հաջողվում չղջիկին: Ի վերջո հայտնաբերվեց, որ չղջիկի ականջն օժտված է նաև այդ հարմարանքով, այդ կարևոր գործոնն իրականացնում է հազիվ նկատելի մի մկան:

Բրածո չղջիկները շատ քիչ բանով են տարբերվում այժմյան չղջիկներից, իսկ դա նշանակում է, որ այդ կենդանիները ռադարից օգտվում են մոտավորապես արդեն 50 միլիոն տարի:

Նավապետի դեմքին մտահոգություն կար, այժմ այնքան էլ վստահ չէր, որ անպայման շահելու է գրազը: Բայց երբ ասացի, թե երկրորդ օրինակը նվիրված է էլեկտրականությանը, կապիտանը աշխուժացավ: Նա ոչ մի կերպ չէր ցանկանում հավատալ, թե կենդանիներն օգտվում են էլեկտրականությունից:

Ես նրան պատմեցի տարօրինակ արտաքինով, սկավառականձև տորպեդո-ձկան մասին, որն օժտված է էլեկտրական օրգաններով: Ավազագույն, սովորաբար կիսով չափ ավազահատիկների մեջ թաղված այդ ձկները համարյա անտեսանելի են: Մի անգամ Հունաստանում ինձ բախտ վիճակվեց ականատես լինել նրա «էլեկտրական ուժին»: Կանգնած ափին, ես նայում էի ծովածոցի ծանծաղ ջրերում եռաժանիով ձկնորսություն անող փոքրիկ տղային: Նա քայլում էր մինչև ծնկները հասնող թափանցիկ ջրում և ստեպ-ստեպ իջեցնում եռաժանին: Հանկարծ նա կտրուկ անշարժացավ տեղում, ձգվեց պահակակետում կանգնած ժամապահի նման և հրացանի գնդակի պես դուրս թռավ ջրից: Նրա աղաղակը լսելի էր, երևի. առնըվազն մեկ մղոնի վրա: Նա ճողփյունով կրկին ջուրն ընկավ, նորից աղաղակեց, այս անգամ ավելի բարձր, և էլի վեր թռավ: Երրորդ անգամ հայտնվելով ջրում, նա այլևս չկարողացավ բարձրանալ: Ահավոր ջանքերով, մի կերպ նրան հաջողվեց սողալով հասնել ափ: Կասկած չկար, որ փոքրիկի ոտքը դիպել էր տորպեդո-ձկան էլեկտրական մեջքին:

Ես պատմեցի նաև Հարավային Ամերիկայի գետերում բնակվող էլեկտրական օձաձկան մասին: Այդ ձկներն ամբողջովին սև են, հասնում են մինչև ութ ֆուտ երկարության: Նրանց վտանգավորության և կատաղի վարքի մասին ես շատ էի լսել, բայց ճիշտն ասած այնքան էլ հավատ չէի ընծայում այդ պատմություններին, համարելով, որ դրանք խիստ չափազանցված են: Այդ էր պատճառը, որ ուրախությանս չափ չկար. երբ Բրիտանական Գվիանայում բնիկներից ինձ հաջողվեց գնել նաև էլեկտրական օձաձուկ: Ուղեկիցներիս հետ գնված կենդանիներով տեղավորվեցինք նավակում և ճամփա ընկանք մեր ճամբարը: Ճանապարհին ես նկատեցի, որ փշախոզուկն աչքը չի կտրում օձաձկից, որը տեղավորված էր զամբյուղում: Ճանապարհի կեսից ավելին արդեն մնացել էր ետևում, երբ հանկարծ փշախոզուկը նետվեց գիրկս և սկսեց մագլցել վեր, փորձելով տեղավորվել գլխիս: Պաշտպանվելով նրա փշերից, ես նկատեցի, որ զամբյուղը դատարկ է և օձաձուկն ամենայն վրձռականությամբ գալիս է ինձ վրա: Ինքս էլ չզգացի, թե ինչպես տեղիցս վեր թռա՝ շարունակելով կրծքիս սեղմել փշախոզուկին: Նստարանին վայր ընկա այնպիսի թափով, որ նավակը քիչ մնաց շրջեի՝ ջրասույզ անելով բո-




Նկ. ԱՇՈՏ ԲԱՅԱՆԴՈՒՐԻ

լորիս: Բարեբախտաբար, սկսված իրարանցման մեջ օձաձուկն ընկավ ջուրը և մեզանից ոչ մեկը լուրջ վնասվածք չստացավ:

Կենդանաբանական այգիներից մեկում ես ականատես եմ եղել, թե ինչպես է սնունդ հայթայթում էլեկտրական օձաձուկը: Մոտենալով իր զոհին, մեկ ֆուտ հեռավորության վրա օձաձուկն անսպասելիորեն սկսում է դողալ, կարծես ինչ-որ մեքենա է սկսում գործել նրա երկար ու սև մարմնում: Զոհը մի պահ քարանում է տեղում, ապա շրջվում մեջքի վրա և դանդաղորեն ջրի երես լողում:

Ավարտելով էլեկտրականության բնագավառում կենդանիների ձեռք բերած նվաճումներին նվիրված պատմությունս, ես անցա բժշկությանը՝ անզգայացմանը, ժամանակ չտալով ուշքի գալ նավապետին:

Կրետներն իրենց ձվերը տեղավորում են երկարավուն, սնամեջ ձողիկների մեջ: Ամեն ձվի հետ կրետը դնում է նաև սնունդ, որպեսզի թրթուրները ձվից դուրս գալուց հետո կերակրի կարիք չզգան: Սակայն ամեն սնունդ չէ, որ կարելի է լցնել ձողիկների մեջ, սատկած միջատները երկար չեն դիմանա, կփչանան մինչև թրթուրների աշխարհ գալը: Ուստի նրանց անհրաժեշտ է կենդանի սնունդ: Այդ պատճառով կրետը ոչ թե սպանում, այլ անզգայացնում է իր զոհին: Այդ միջատի սիրած որսը սարդն է: Կրետից խայթված սարդն անզգայանում է, անընդունակ դառնում շարժվել, բայց կենդանի է: Այսպես կրետն իր ապագա թրթուրներին ապահովում է «պահածոյացված» թարմ սննդով:

Այժմ արդեն կասկածից վեր էր, որ նավապետը ցնցված էր, իսկ ես անցա վերջին՝ չորորդ օրինակին:

Մարդուն միայն վերջերս հաջողվեց հայտնագործել ջրի տակ համեմատաբար երկար մնալու եղանակները, իսկ ջրասարդին այդ գաղտնիքը հայտնի է անհիշելի ժամանակներից: Ջրասարդը ջրի տակով կարող է լողալ ուզածի չափ, որպես ջրասուզազգեստ օգտագործելով օդի պղպջակը, որը ճանկերով սեղմում է փորին: Իր բույնն անգամ ջրասարդը հյուսում է ջրի տակ, այն լցնելով ջրի մակերևույթից բերված օդային պղպջակներով: Իր բնում ջրասարդը նույնքան ազատ է շնչում, որքան և ցամաքում: Այդ բնում էլ ջրասարդը ձու է դնում, աճեցնում իր սերունդը: Մեծանալով ձագերը մեկական օդային պղպջակ են վերցնում և լքում հայրական տունը, ինքնուրույն կյանք սկսելու համար:

Ես վերջացրել էի, բայց նավապետը դեռևս անշարժ նստած էր: Ջրասարդի մասին պատմությունս նրան վերջնականորեն սասանել էր: Վերջապես նա ոտքի կանգնեց և շնորհավորեց ինձ շահած գրազի համար:

Մեկ տարի անց ես զրուցում էի մի կնոջ հետ, որը հենց նոր էր ճանապարհորդել այդ նույն նավով: Իմանալով, որ ես էլ եմ եղել այդ նավի վրա, նա ասաց.

— Այդ նավապետը շատ զարմանալի և հետաքրքիր մարդ է և մինչև ականջները հրապուրված է կենդանիներով: Մի երեկո նա մեզ ուղղակի ցնցեց տարբեր գիտական հայտնագործությունների մասին իր պատմություններով: Եվ գիտե՞ք, այդ հայտնագործությունները մարդկանցից շատ ու շատ առաջ արել են կենդանիները: Պատկերացնում եմ, թե ձեզ համար որքան հաճելի է եղել ճանապարհորդել կենդանիներին այդքան սիրող նավապետի հետ:



# ՈՒՐՎԱԿԱՆ ԲՈՒՅՍԵՐ

Անապատային որոշ շրջաններում հանդիպում են այնպիսի բույսեր, որոնք բոլորովին նման չեն բույսի: Խոնավության համարյա իսպառ բացակայությունը, ցերեկվա խիստ շոգը, գիշերվա ցուրտը, հրեշավոր քամիներն ու ավազահողմերը ամենաանտանելի պայմաններն են ստեղծում այդ բույսերի համար:

Տեղացիներից քչերն են համարձակվում գիշերով անցնել Անգոլայի անապատներով: Գոյություն ունի այն նախապաշարմունքը, թե անապատում մարդկային ուրվականներ են թափառում:

...Մի անգամ, ուշ երեկոյան, երբ բուսաբանների արշավախումբը գիշերելու համար վայր էր փնտրում, առջևից գնացողները սարսափահար ետ վերադարձան: Նրանք ուրվականներ էին տեսել: Մի քանի խիզախներ շարունակեցին առաջ շարժվել: Տեսարանը իսկապես ցնցող էր: Դիմացի հովտում, լուսնի լույսի տակ, տեգերով, եռաժանիներով ու կացիններով զինված մարդկային բազմաթիվ կմախքներ, թվում էր, թե դանդաղ դեպի հյուսիս էին շարժվում... Հաղթահարելով առաջին րոպեների սարսափը, ճանապարհորդները համոզվեցին, որ այդ ահավոր' շքերթը միանգամայն անշարժ է. միայն թե «կմախքները», նրանց «ձեռքերն» ու «զենքերը» կարծես մի ընդհանուր հրահանգով դեպի հյուսիս էին թեքված:

...Առավոտյան գաղտնիքը բացահայտվեց: Ուրվականները ոչ այլ ինչ էին, եթե ոչ Անգոլայի անապատին բնորոշ անհեթեթ ու տարօրինակ բույսեր, որոնք, ինչպես պարզեցին բուսաբանները, կոչվում էին պախիպոդիում: Դրանց փշապատ, համարյա տերևազուրկ ճյուղերը մարդաչափ բարձրությամբ ոլոր-մոլոր ձգվում էին վեր, հաճախ խիստ նմանվելով մարդկային կմախքի: Ճյուղերը մեծ մասամբ ուղղված էին դեպի հյուսիս, քանի որ պախիպոդիումը սովորություն ունի թեքվելու դեպի արևը (հարավային կիսագնդում արեգակը որոշակիորեն թեքված է դեպի հյուսիս):

Հուրանավոր կոթիլեդոնը, որն աճում է Հարավային Աֆրիկայում, նույնպես չափազանց տարօրինակ տեսքի պատճառով «բույս ուրվական» է կոչվում: Սոկոտրա կղզու բնակիչ է մի այլ «ծառ ուրվական»՝ տարօրինակ ադենիումը:

Հայաստանի անտառային շրջանների բնակիչները լավ գիտեն, որ լուսնկա գիշերներին ղաժուտների կողքով անցնելիս, կարելի է տեսնել, թե ինչպես անասունների կողմից կրծոտված ղաժու թփերը զանազան ֆանտաստիկ ու տարօրինակ պատկերներ են ներկայացնում: Դրանք հիշեցնում են զանազան կենդանիներ, թռչուններ, մարդիկ, հսկաներ, թըզուկներ, հեքիաթային կենդանիներ և այլ պատկերներ: Անսովոր ու բանից անտեղյակ մարդը կարող է լրջորեն վախենալ:

*ԼԵՎՈՆ ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ*

*կենսաբանության դոկտոր, պրոֆեսոր*



Գիտե՞ք, որ...

## «ԿԱՐԴԱՆՈՅԻ ԲԱՆԱՁԵՎԸ»

Միջնադարյան Իտալիայում մեծ ժողովրդականություն էին վայելում մաթեմատիկական մրցումները: Հրապարակում մրցակիցների համար սեղան էր դրվում, իսկ շուրջը հավաքվում էր հանդիսականների բազմությունը: Մաթեմատիկոսներից յուրաքանչյուրը մյուսին որոշակի քանակությամբ խնդիր էր առաջարկում: Հաղթող էր համարվում նա, ով ամենից շուտ էր լուծում այդ խնդիրները:

Նման մրցումներում անպարտելիի համբավ էր ձեռք բերել իտալացի մաթեմատիկոս Նիկոլո Տարտալյան: Մի անգամ նրան մրցման հրավիրեց ոմն Ֆիորի, որը հայտնի էր իր համբավով, բայց ոչ մաթեմատիկական ընդունակություններով: Տարտալյան վստահ էր, որ ինքը կհաղթի, սակայն մրցումներից երեք օր առաջ իր ընկերները լուր բերին, թե Ֆիորին գիտե քառակուսի հավասարումների գաղտնիքը, որ իբր այն նրան է անցել իր ուսուցչից:

Երեք օր Տարտալյան դուրս չեկավ սենյակից: «Ես ամեն ճիգ ու ջանք թափեցի, իմ ամբողջ արվեստը գործի դրեցի, որպեսզի այդ հավասարումների լուծման գաղտնիքը գտնեմ, և դա ինձ բախտի բերմամբ հաջողվեց»,— հիշում էր նա հետագայում: Մրցման ժամանակ նա փայլուն հաղթանակ տարավ: Հաղթանակի լուրը հասավ Բոլոնյա, որտեղ այն ժամանակ ապրում էր տաղանդավոր և նույնքան էլ նենգ ու մեծամիտ Ջերոլամո Կարդանոն: Նա գտնում էր, որ գիտության տարբեր բնագավառներում ինքը 40 հազ. հայտնագործություն է արել: Քառակուսի հավասարումների լուծման գաղտնիքը, թվում էր միակն է, որին ինքը չէր տիրապետում: Տարտալյայից նա խաբեությամբ և խորամանկությամբ կորզեց այդ գաղտնիքը: Տարտալյան հավատաց Կարդանոյի տված «ազնվական մարդու ազնիվ խոսքին»:

Ինչքան մեծ եղավ Տարտալյայի զարմանքն ու զայրույթը, երբ, որոշ ժամանակ անց, Կարդանոն «Մեծ արվեստ կամ հանրահաշվի կանոնները» վերնագրով տրակտատ հրապարակեց, որտեղ քառակուսի հավասարման լուծման մեթոդը իրենն էր վերագրել:

Տարտալյան իրեն վիրավորողին մարտի հրավիրեց: Կարդանոն ընդունեց հրավերը, սակայն իր փոխարեն ուղարկեց իր աշակերտին, որը շրջապատված էր բարեկամների ու ազգականների մեծ բազմությամբ: Տարտալյան փայլուն կերպով վճռեց բոլոր խնդիրները, կոպիտ սխալ գտնելով հակառակորդի լուծումներում, սակայն հակառակորդի բարեկամների ձեռքերում փայլեցին մերկացրած թրերն ու դաշույնները: Տարտալյան ստիպված էր փախչել:

Պատմությունը, դժբախտաբար, նույնպես անարդար գտնվեց Տարտալյայի նկատմամբ. քառակուսի հավասարումների լուծման մեթոդը մինչև այժմ էլ գիտությանը հայտնի է «Կարդանոյի հավասարում» անվան տակ:

# ՀՈՒՇԱՐՁԱՆ

**1978-ի օգոստոսի վերջին օրերն էին, մի անգամ Ռուբեն Զարյանն առաջարկեց այցելել Ռաֆոյին (այսպես էին անվանում մտերիմները ՍՍՀՄ ժողովրդական ճարտարապետ Ռաֆայել Իսրայելյանին):**

Կեսօրին գնացինք տուն (նա հիվանդության պատճառով արդեն հիմնարկ չէր գնում): Շատ ուրախացավ, ցուցադրեց վերջին գործերի գծագրերը: Երբ հերթը հասավ Ապարանի հերոսամարտի հուշարձանին, որի նախագծի ավարտումը ձգձգվում էր տեղի ճարտարապետի մեղքով (նա պետք է բերեր տեղանքի վերաբերյալ լրացուցիչ տվյալներ), Ռաֆոն զայրացած ասաց՝ «Էս տղան էլ չի բերում տվյալները, որ նախագիծն ավարտեմ: Ասում եմ՝ ախր վերջին օրերս են, բեր, որ կիսատ չմնա գործը»: Ու այնքան պարզ ու հասարակ ասաց, ինչպես որ մարդ կասեր՝ «արձակուրդիս ժամկետը մոտենում է, պետք է գործս ավարտեմ»:

Այս դեպքը վերհիշեցի ես, երբ կանգնած էի քարակոփ հուշարձանի առաջ նրա բացման հանդիսավոր արարողության ժամանակ: Այստեղ ևս մեկ անգամ փաստակեց Իսրայելյանի անզուգական տաղանդը, պարզ միջոցներով գեղարվեստական բարձր հնչեղություն ունեցող հուշարձաններ ստեղծելու նրա ունակությունը:

Ռ. Իսրայելյանի ժառանգությունը հարուստ է այնպիսի գործերով ,որոնք նվիրված են մեր ժողովրդի պատմական ճակատագրի բախտորոշ իրադարձություններին՝ Սարդարապատ, Մուսալեռ, Նոր Հաճն, Մեծ Եղեռնի զոհերին նվիրված հուշարձաններ, բազմաթիվ հուշաղբյուրներ և այլն:

Ահա և Ապարանի հերոսամարտի հուշարձանը: Երկնենտրոնին մոտենալիս արդեն ձեր ուշադրությունն է գրավում սև տուֆից կերտված մի անսովոր վերապալաց ծավալ, որը հեռվից ընկալվում է որպես մի ամբողջություն և ասես շարունակում է բլրի ուրվագի-



*Լուսանկարը՝ ԶԱՎԵՆ ՍԱՐԳՍՅԱՆԻ*

ծը: Նրա առաջացրած կերպարային ասոցիացիաները միանշանակ չեն և ոչ էլ խիստ որոշակի: Հուշարձանը մեզ գերում է հենց այդ կերպարային անորոշության, ավելի շուտ՝ դեպի տարբեր ժանրերը տանող նմանությունների ուժով: Դա ասես մի կիսավարտ (գուցե՝ կիսաքա՞նդ) բերդ է, բայց շատ անսովոր, արդիական կերպարո՞վ, թե՞ պատմական թեմայով պիեսի ներկայացման դեկոր. պատկերված Արագածի ձյունածածկ ֆոնի վրա: Այս անորոշ մտորումները ավելի որոշակի ուղղություն են ստանում, երբ դիտում ենք հուշարձանի հակադարձ կողմը: Այն ավելի «ճարտարապետական» է: Ծավալի ընդհանուր ֆոնի վրա նկարվում են երեք կամարակապ գեղեցիկ խորշեր, յուրաքանչյուրի մեջ տա̀րբեր չափսերի ու ձևերի կոթողներ: Նրանք հավերժացնում են 1915, 1918, 1941—1945 թթ. հայրենիքի ազատագրության մարտերում ժողովրդի պանծալի զավակների սխրանքը:

*ԼԵՎՈՆ ԲԱԲԱՅԱՆ*

# ԳԵՆԵՐԱԼ-ԼԵՅՏԵՆԱՆՏ

# ՍԱՐԳԻՍ ՄԱՐՏԻՐՈՍՅԱՆ

Հայրենական մեծ պատերազմում բազում ճակատամարտեր շահած գեներալ-լեյտենանտ Սարգիս Մարտիրոսյանի զորամասերը 1945 թվականի մայիսին ազատագրել էին Պրագան և ահա կառամատույցում դիմավորում էին Չեխոսլովակիայի նորաստեղծ կառավարությանը: Չեխական առաջին բրիգադի հրամանատար Լյուդվիգ Սվոբոդան, որ կռվել էր Մարտիրոսյանի կորպուսում, այնուհետև ստացել էր բանակի գեներալի կոչում և նշանակվել ՉՍՍՀ զինված ուժերի մինիստրը:

Նորաստեղծ կառավարության անդամները երբ գնացքից իջնում են, Սվոբոդան սովետական զորահրամանատարների մեջ նկատում է գեներալ Մարտիրոսյանին: Նա բազուկները լայն տարածած մոտենում, հրճվանքով ողջագուրվում է, ապա բոլորին լսելի ասում.

— Շնորհակալություն, հրամանատար, ես խնդրել էի, որ հաղթանակից հետո հյուր գայիք ինձ և Պրագայում միասին նշեինք հաղթանակը: Շատ ուրախ եմ, որ ինձնից շուտ եք մտել Պրագա:

Հայրենական պատերազմի տարիներին Մարտիրոսյանը վարել է հարձակողական և պաշտպանական բազմաթիվ մարտեր և բոլորն էլ պսակվել են հաջողությամբ: Նրա ղեկավարած կորպուսի հրամանատարների դեպի գեներալն ունեցած սիրո վկայությունն է «Մենք մարտիրոսյանականներ ենք» երգը, որն իրենց շուրթերին նրանք մարտի էին նետվում:

Սովետական բոլոր զորահրամանատարների պատերազմական հուշերում ջերմ խոսքերով է հիշատակված գեներալ-լեյտենանտ Մարտիրոսյանի անունը որպես հմուտ, ռազմագետ զորավարի...

Սարգիս Սողոմոնի Մարտիրոսյանին շնորհվել է Սովետական Միության հերոսի կոչում: Նա պարգևատրված է Լենինի 4, Կարմիր դրոշի 4, Սուվորովի երկրորդ աստիճանի երկու շքանշաններով, Սովետական Միության 26 մեդալներով, ՉՍՍՀ չորս շքանշաններով, որոնցից երեքը՝ «Սպիտակ առյուծի», մեկը՝ «Խաչը սրերով» և ՉՍՍՀ 15 մեդալներով: Մարտիրոսյանը պարգևատրված է նաև ԱՄՆ Հրամանատարական առաջին աստիճանի շքանշանով, նրան շնրհված է ԱՄՆ բանակի Պատվավոր լեգիոնների կոչում: Լեհական Ժողովրդական Հանրապետության կողմից պարգևատրվել է «Վիրտուտի Միլիտարիի» շքանշանով, Ռումինական Սոցիալիստական Հանրապետության կառավարության կողմից՝ «Տուդորա Վլադիմիրեսկու» շքանշանով, Ֆրանսիական և Իտալական Դիմադրության կազմակերպությունների կողմից՝ «Գարիբալդիական աստղով», «Ոսկե շքանշանով» և «Ոսկե մեդալով»:

*Լուսանկարը՝ ՏԻԳՐԱՆ ՓԱՇԱՅԱՆԻ*

Երևանի պետական համալսարանի նախապատրաստական բաժնի ունկնդիրները այցելեցին Գառնու տաճարը և գրեցին այդ մասին շարադրություն: Տպագրում ենք այդ շարադրություններից մեկը, հայտարարելով լավագույն շարադրության մրցույթ՝ ուզած թեմայով: Մրցույթին մասնակցելու ենք հրավիրում մեր բոլոր ընթերցողներին:



*Լուսանկարը՝ ԶԱՎԵՆ ՍԱՐԳՍՅԱՆԻ*

# ԳԱՌՆԻՈՒՄ

Օրը առավոտից տխուր էր: Իսկ երբ տեղ հասանք, սկսեց մեղմ անձրևել: Ճանապարհին անդադար շատախոսում էինք, նայում ամպերի մեջ կորած լեռներին, զարմանում էինք, թե ինչպես այս քարերի մեջ կարող են այսպիսի փառահեղ ընկուզենիներ աճել:

Չգիտես ինչու, Գառնիում լռեց ամեն խոսք ու զրույց: Միայն մեկ-մեկ լսվում էր մեր «բարևը»՝ ճամփեզրին նստած գառնեցիներին:

Մանուկ էի, երբ առաջին անգամ եղա Գառնիում: Հիշում եմ. հենվել էի մի կիսաթաղ սյան ու զարմանում էի, թե այսքան ծանր քարերը ինչպես են բարձրացրել... Եվ մի բան, որ ոչ մի կերպ չէի կարողանում մոռանալ և չեմ մոռացել՝ ավերված տաճարի հանդիսավոր ու ճնշող լռությունն էր:

Տաճարում դարձյալ լուռ էինք, խոսել չէր հաջողվում: Ճիշտ է, նայում, զննում էինք ամեն քար ու սյուն, հիանում էինք ամեն քանդակով, ամեն սյան գլխազարդով, ամեն մի խաչքարով, բայց ինչ-որ բան թերի էր մնում, ինչ-որ հարց դարձյալ մնում էր անպատասխան:

Ինձ թվում էր, թե ուր որ է իրենց ամեհի նժույգներով այստեղ կսուրան հայոց հաղթաբազուկ սեպուհները, և ուրախ, վրնջացող երիվարներին հազիվ զսպելով, փայլուն սրերով ու նիզակներով զինավառ, որսորդական բարակներով ու բազեներով, կըսպասեն իրենց իշխանին:

Ինչպիսի՜ փառահեղ օրեր է տեսել այս հրաշակերտը... Ինչպիսի՜



## ՊԻՈՆԵՐ-ի փոստը

«Սիրելի խմբագրություն, մենք՝ հեռավոր Յակուտիայի պիոներներս ցանկանում ենք բարեկամանալ Հայաստանի պիոներների հետ: Խնդրում ենք մեր հասցեն տպագրեք ձեր ամսագրում»:

Նման նամակներ են ստացվել նաև Ուկրաինայից և Ուզբեկստանից:

Տպագրում ենք նրանց հասցեները: Ցանկացողները կարող են նամակագրական կապ հաստատել նրանց հետ:

700132, Ташкент, Октябрьский р-н, 3 пр. Илясова, д. № 4, Эльмурадов Бахтиер

326861, УССР, Херсонская обл., Бериславский р-н, село Змиевка, ср. школа, КИД.

678045 Якутская АССР, Верхне-Вилюйский р-н, 1 Батулинская ср. школа, КИД.

---

փոթորկուն արքայական գինարբուքներ՝ հայոց երգ ու տաղով, գոռ պաբերով, քանի՜-քանի՜ դըշխոների և իշխանազունների սիրո ուխտի վայր է եղել, բայց հիմա լռում է՝ սառը, ճնշող ու համառ լռությամբ:

Չշլացա խնդուն փառքից
Անցյալ ու հին փայլով
երբեք,
Սիրեցի հեզ, անքեն
հոգիդ
Ու երգերդ մեղմ ու
բեկբեկ...

Սրանով է սիրելի տաճարն այդ նաիրյան, քանզի արհավիրքներն այն անհատնում, չար սարդոստայնը ճակատագրի նրան դարձրին ավերակ ու կիսաթաղ, լուռ ու գլխահակ, բայց սպանել չկարողացան:

Այս վիթխարի ու ժայռակոփ, բայց միևնույն պահին նուրբ ու սրբատաշ քարերին ժամանակն է պաշարել՝ իր բյուրավոր «ճենգ ու դավով», բայց կան նրանք...

Եվ արդ վերածնվել է տաճարը Գառնու: Մենք շատ կուզեինք խոսել տաճարի հետ, լսել երբեք չավարտվող պատմությունն այդ պատմիչի, բայց նա այդպես էլ մընաց լուռ ու ինքնամփոփ:

Վերադարձի ճանապարհին միայն՝ տաճարն ուղեկից դարձած, բացատրում էր մեզ, որ ժողովուրդը կրելով վիշտ, այդ քարերից էլ ծանր, իր հոգու ջերմությամբ քարերի մեջ աճեցնում է ոչ միայն ընկուզենի, այլև պահպանում կենաց ծառի հավերժ կենսունակ արմատները:

*ՍԱՍՈՒՆ ՍՏԵՓԱՆՅԱՆ*

Լույս է տեսնում 1923 թվականից



# ՊԻՈՆԵՐ 11. 1979 թ.

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՀԱՆՐԱՊԵՏԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

## ԱՅՍ ՀԱՄԱՐՈՒՄ



Շապիկի առաջին էջի լուսանկարը՝ ՏԻԳՐԱՆ ՖԱԼԱՅԱՆԻ

Գլխավոր խմբագիր՝ ԱՆԱՀԻՏ ՍԱՀԻՆՅԱՆ

Խմբագրական կոլեգիա՝ ԱՆԱՆՅԱՆ Վ., ԲԱՅԱԽԱՆՅԱՆ Վ., ԳՐԻԳՈՐՅԱՆ Վ. (պատ. քարտուղար), ԵՍԱՅԱՆ Վ., ԹԱԴԵՎՈՍՅԱՆ Թ., ԽԱՆԶՅԱՆ ԳՐ., ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ Ս., ՀԱԿՈԲՅԱՆ Հ., ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ Հ., ՀՈՎՍԵՓՅԱՆ Ռ., ՄԻԼԻՏՈՆՅԱՆ Է., ՍԻՐԱՎՅԱՆ Հ., ՍՄԲԱՏՅԱՆ Կ. (գեղ. խմբագիր):

Տեխ. խմբագիր՝ Հ. ՀԱՄԲԱՐՁՈՒՄՅԱՆ

Վերստուգող սրբագրիչ՝ Հ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

«Пионер» на армянском языке. Ежемесячный детский журнал ЦК ЛКСМ Армении и Республиканского Совета пионерской организации им. В. И. Ленина. Адрес редакции: 375015, Ереван-15, ул. Кармир банаки, № 15.

Հասցեն՝ 375015, Երևան 15, Կարմիր բանակի փողոց, № 15: Հեռախոսներ՝ 56 32 72, 58 08 33, 56 14 96:

ՎՃ 08712: Պատվեր 2006: Տպաքանակ 51612: Տպ. 3 մամ.:
Հանձնված է արտադրության 28 IX 1979 թ.:
Ստորագրված է տպագրության 22 XI 1979 թ.:

ՀՍՍՀ Մինիստրների խորհրդի հրատարակչությունների, պոլիգրաֆիայի և գրքի առևտրի գործերի պետական կոմիտեի Հ. Մեղապարտի անվան պոլիգրաֆկոմբինատ. Երևան 9, Տերյան փ. № 91:

## Բառաշղթա-վիկտորինա

# «Աշխարհի գետերը»




1. Սովետական Միությունում գտնվող ո՞ր գետն է, որն իր անունն ստացել է համանուն լեռներից: 2. Գետ ՍՍՀՄ-ում, որի երկարությունը հասնում է 4270 կիլոմետրի: 3. Ո՞ր գետի վրա է կառուցված Բրատսկի հիդրոէլեկտրակայանը: 4. Հարավային Ամերիկայում գտնըվող գետ, որն ունի 200-ից ավելի վտակներ, որոնցից յուրաքանչյուրի երկարությունը 1500—3500 կմ է: 5. Աֆրիկայում գտնվող խոշոր գետ, որը Եգիպտոսում հայտնի է Էլ-Բահր անունով: 6. Ո՞ր գետն է հոսում Ֆրանսիայի մայրաքաղաքի՝ Փարիզի միջով: 7. Գետ, որը սկիզբ է առնում Գեղամա լեռներից: 8. Իրտիշ գետի աջ վըտակներից: 9. Ո՞րն է Լենա գետի ամենամեծ վտակը: 10. Գետ Կանադայում, որը հայտնաբերվել է 1612 թվականին անգլիացի ճանապարհորդ-ծովագնաց Թոմաս Բուտտանի կողմից և կոչվել է ուղեկցող նավապետի անունով: 11. Գետ Միջին Ասիայում, որի վրա գտնվում է համանուն քաղաք: 12. Ո՞ր գետն է գտնվում ՌՍՖՍՀ-ի և Էստոնիայի սահմանում: 13. Իտալիայում գտնվող ո՞ր գետն է, որը թափվում է Միջերկրական ծովը և որի վրա են գտնվում Ֆլորենցիա և Պիզա քաղաքները: 14. Ո՞ր գետի վրա է կառուցված Տաթևի հիդրոէլեկտրակայանը: 15. ՍՍՀՄ-ում գտնվող ո՞ր գետն է անցնում Բելոռուսիայի և Լիտվայի տերիտորիայով:

Կազմեց ՅՈՒԼԻԿ ՂԱՆԴԻԼՅԱՆԸ

## № 10 ՊԱՏԱՍԽԱՆՆԵՐ № 10



Գրական ծաղկաքաղ

ՀՈՐԻԶՈՆԱԿԱՆ

Շիրվանզադե
Դեմիրճյան
Պռոշյան
Րաֆֆի
Զորյան
Նար-Դոս
Զարյան

ՈՒՂՂԱՀԱՅԱՑ

«Նամուս»
«Վարդանանք»
«Հունոն»
«Սամվել»
«Հայոց բերդը»
«Մեր թաղը»
«Հացավան»

Խաչբառ



1. Լալազար: 2. Վավիլով: 3. Քարավան: 4. Գագարին: 5. Շարական: 6. Կարախան: 7. Ազարյան: 8. «Ազդարար»: 9. Սալոնիկ: 10. «Հարբրբան»: 11. Բորոդին: 12. Կոտորակ: 13. Դինամիտ: 14. Չիգորին: 15. «Մանուշակ»: 16. Պապանին: 17. Միկոյան: 18. Միչուրին: 19. Սանասար: 20. Սարոյան: 21. «Ճախարակ»: 23. Բարիբին: 24. Բալասան:

# «ՅՈՒՐԱՔԱՆՉՅՈՒՐ ՀՈՒՇԱՐՁԱՆԻՆ՝ ԱՆՁՆԱԳԻՐ»



ՀՍՍՀ գիտությունների ակադեմիայի նախագահությունը, ՀԼԿԵՄ Կենտկոմի քարտուղարությունը և ՀՍՍՀ լուսավորության մինիստրության կոլեգիան «Իմ





հայրենիքը՝ ՍՍՀՄ» էքսպեդիցիայի ծրագրով անցկացնում են «Յուրաքանչյուր հուշարձանին՝ անձնագիր» հանրապետական օպերացիա, որին ձեռնամուխ են եղել հանրապետության պիոներ-դպրոցականները՝ ուսուցիչների և ջոկատավարների ղեկավարությամբ:

«Պիոներ» ամսագրի № 9-ից բացված «Պահպանենք մեր հուշարձանները» բաժինը այսուհետև կշարունակվի «Յուրաքանչյուր հուշարձանին՝ անձնագիր» նշանաբանով:

Այս համարում ներկայացված են Սևանի հուշարձանները:

Հարյուրամյակներ շարունակ կղզու զառիվեր լանջին կանգնած են երեք խաչքար: Այսօր էլ կան այդ խաչքարերը, այսօր էլ զարմացնում ու հիացնում են իրենց անձեռակերտ զարդաքանդակներով, բայց երբ մոտենում ես խաչքարերին, ցավից կծկվում է սիրտդ: Անտիպաշտի մեկը (ինչ խոսք պատմական արժեքները չգնահատող, ազգային արժանապատվությունից զուրկ) խնաքար քսելով «իր բախտն է» փորձել խաչքարի վրա: Տարեցտարի ավելացել է նման բախտափորձների թիվը: Քարերի շփումից նախշերը ջնջվել, սպիտակ վերքեր են առաջացել քարերի վրա:



Լուսանկարները՝ ՏԻԳՐԱՆ ՓԱՇԱՅԱՆԻ